ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

# ՏԻՄՈԹԷՈՍ ԿՈՒԶԻ

ՀԱԿԱՃԱՌՈՒԹԵԱՆ

ՀԱՅԵՐԷՆ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԾԷ.

Ա.

# ՏԻՄՈԹԷՈՍ ԿՈՒԶ

## ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ

Բ.

## ՀԱՅԵՐԷՆ ՆՈՐ ԲԱՌԵՐ

# ՏԻՄՈԹԷՈՍ ԿՈՒԶԻ

## ՀԱԿԱՃԱՌՈՒԹԵԱՆ ՄԷՋ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1909.

Ա.

# ՏԻՄՈԹԷՈՍ ԿՈՒԶ

## ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ

### ՔՆՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

---

ՀԱՆԴԵՐՁ ՅԱՒԵԼՈՒԱԾՈՎ

**ՏԻՄՈԹԷՈՍ Ա. ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻ**

---

ԳՐԵՑ

**Հ. ՆԵՐՍԷՍ ԱԿԻՆԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1909.

# Ա Զ Դ

—

Ուշադրութիւնը, որուն արժանի էր Տփղիսեցու Կուզի Հակաճառութիւնը նոր հրատարակութեան առթիւ, գոհութեամբ կընանք ըսել թէ չզլացուեցաւ հայ բանասիրութեան կողմանէ: Այս շատ տեսակէտով հետաքրքրական մատեանը հակառակ տարիներով անյայտութեան մէջ ծածկուելուն՝ անպայման նշանակութիւն մը ստացած է, որուն ուսումնասիրութիւնն թէ մատենագրական, թէ լեզուական եւ թէ վարդապետական տեսակէտով կարեւոր է տոհմային գրականութեան պատմութեան համար: Հրատարակիչներու Յառաջաբանն, Գ. Տէր-Մկրտչեանի եւ ներկայ աշխատութիւնք յատկապէս մատենագրութեան համար ունեցած արժէքն ի նկատի կ՚առնուին: Ուրախական է ըսել թէ լեզուականն ալ չէ վրիպած ուշադրութենէն եւ ծանօթ լեզուաբանին Հ. Աճառեան իր "Հայերէն նոր բառեր Տփղիսեցու Կոզի Հակա-

մատութեանմէջ,, աշխատասիրութեամբ[1] կու գայ ուսումնասիրել, որ գործոյս Բ. Մասն պիտի կազմէ:

Ներկայ աշխատութիւնը նախապէս մաս մաս լոյս տեսած է Հանդէս Ամսօրեայ թերթին մէջ[2], արտատպութեան ժամանակ կրած է ինչ ինչ թեթեւ փոփոխութիւն:

Կից կը գտնեն ընթերցողք Յաւելուած մը՝ Տիմոթէոս Ա. Աղեքսանդրացի[3], որ Կոռզի գրականութեան հետ պատշաճ էր մի եւ նոյն ժամանակ ուսումնասիրուիլ:

---

1 Հանդէս Ամսօրեայ 1908, թ. 12. 1909, թ. 2:

2 Անդ. 1908, թ. 9, էջ 261-265. թ. 10, 294-302, թ. 12, էջ 383—84:

3 Անդ. թ. 11, էջ 324-327:

Վիեննա, 13. Դեկտ. 1908.

ՀԵՂԻՆԱԿԸ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

---

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

# ՏԻՄՈԹԷՈՍ ԿՈՒԶ

## ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ

1. Կարօտ է մանր ուսումնասիրութեան Զ. դարն, որ հակառակ ցայժմ մթութեան մէջ ինք զինք անյայտացընելուն, օր աւուր Հայոց եկեղեցական եւ մատենագրութեան պատմութեան նշանաւոր դարագլուխներէն մին կը հանդիսանայ։ Ուրախալի է ըսել, որ քայքայեցան եւ կը քայքային տակաւ տակաւ զայն մթագնող ամպերն, եւ դարն կը պարզուի իւր սեպհական երանգներովն մեր աչաց՝ շնորհիւ յերեւան ելլող յիշատակարաններու։ Յայտնի է այսօր Միաբնեայ վարդապետութեան մուտքն ի Հայս իւր մանրամասնութեամբն[1], որ յինքեան Զ. դարու պատկերն է միանգամայն։ Բաւական չէ սակայն եկեղեցւոյ արտաքին՝ պատմական անցեալին յայտնութիւնն միայն, կարեւոր է նաեւ

---

1 Համմտ. E. Ter-Minassiantz, Die armenische Kirche in ihren Beziehungen zu den syrischen Kirchen bis zum Ende des 13. Jahrhunderts. Leipzig 1904, S. 30—59. Առ այս մատենախօսականս՝ Հանդ. Ամս. 1907. էջ 252–256։ Գալէմքեարեան. Հ. Յ., Խրատախոհի կեղծիք. Բ. (անտիպ)։ — Ակինեան Հ. Ն., Պետրոս Սիւնեաց եպիսկոպոս, Հանդէս Ամս. 1903, էջ 245—252. 1904, էջ 18–22, 77—83, 105—113։

մտաւոր կենաց պատմութիւնն յերեւան հանել որոշ գծերով. մանաւորապէս թէ որ չափով եղաւ Նոր հոսանքին առթած յեղաշրջութիւնն նաեւ մատենագրական տեսակէտով, որ պարզուած չէ տակաւին։ Նոր վարդապետութիւնն հարկաւ գրաւոր ալ քարոզուած պիտի ըլլայ ազգին մէջ Նոր առաքեալներէն. որչափ ալ աներկբայական է այս, հետքերն չեն երեւար բնաւ։ Խնդիրս կը հայի յատկապէս հայ թարգմանական գրականութեան։ Թէ յիրաւի Նոր վարդապետութիւնն նաեւ գրաւոր բերուեցաւ ի Հայս՝ ունինք կարեւոր վկայութիւն մը ժամանակակից կաթողիկոսէն՝ Բաբգէնէն (506/7—512/3), որ իւր “ի Պարսս առ ուղղափառս„ Բ. թղթին մէջ ծանօթ կը ցուցընէ ինք զինք Քերսոն քաղաքի Ամպեղիս եպիսկոպոսի “գրոյն[1]„, ուր “ճշմարտապէս գրած է սուրբ քահանայապետն Քերսոնիտացւոց Ամպեղիս՝ հանդերձ ԲԺ գլխովք Կիւրղի եպիսկոպոսի երանելւոյ, ի նոյն յարելով եւ զթուղթն Զենոնի բարեբանելոյ թագաւորին Հոռոմոց„, եւ որուն ստուգութեամբ վկայած է Կոստանդիանուպոլսի երէցն աստուածասէր Անատոլիս„։ Բաբգէն այս թուղթը կը կցէ մինչեւ անգամ իւր ի Պարսս գրած թղթին (“Վասն թղթոյն Ամպեղի եպիսկոպոսի եւ Անատոլեայ երիցու հրամայեցաք աստ գրել„), թէեւ այսօր անյայտ է մեզի համար։ Զենոնի թուղթը ունինք հին հայերէն թարգմանութեամբ։ Բացի այս

[1] Գիրք Թղթոց, Տփղիս, 1901, էջ 49։

թղթէն եղած են նման գրութեանց թարգմանութիւններ ալ այս դարուն, որոնցմէ զոմանս կը յիշատակէ 606ին Վրթանէս Քերթող առ Մովսէս եպ. Ցուրտաւայ թղթին մէջ. "Եւ որ յանդիմանեն եւ նզովեն զժողովն եւ զտումարն՝ թուղթն Զենոնի ուղղափառ թագաւորի, որ կոչի Հենատիկոն [1], եւ թուղթն երանելոյ Անաստասայ թագաւորի, եւ գիրք Տիմոթէոսի Աղեքսանդրացւոյ. եւ թուղթ Յովհաննու եպիսկոպոսապետի [2]. եւ թուղթն Պետրոսի Անտիոքացւոյ [3]. եւ Պատճառն իսկ. եւ այլ բազում թուղթք ուղղափառաց [4] ": Այս կարգի գրութիւնք, որոնք եղած են բաւական յաճախ թուով, կարօտ են այժմ յատուկ ուշադրութեան ազգային դաւանաբանական պատմութեան ուսումնասիրութեան համար. այնու մանաւանդ, որ այս թարգմանութիւնք կատարուած են ժամանակամիջոց մը (Զ. դար), երբ հայ գրականութիւնն եւ կեանքը

---

1 Զենոնի եւ Անաստասայ թղթերն Պետրոսի եւ Ակակի թղթակցութեանց հետ՝ թարգմանուած ասորերէնէ Զ. դարու առաջին քառորդին, ունինք Գիրք Թղթոց մէջ, էջ 269 - 271, 277–78:

2 Ըստ երեւութին Գիրք Թղթոց "Երանելոյն Յովհաննու [Հայոց] եպիսկոպոսապետի Ապացոյց յերկուց բնութեանց աւել զփրկիչն եւ կամ մի բնութիւն" (էջ 29—40) գրուածն է, թարգմանուած նոյնպէս Զ. դարու առաջին քառորդին:

3 Ըստ Նորայրի (Հանդ. Ամս. 1908, էջ 155—56) ակնարկուածն է "Հաւատարմագունի եւ իմաստնագունի եւ աստուածասիրագունի եղբաւր՝ ողորմելիս Պետրոս Տերամբ խնդալոյ խորագրեալ թուղթն, հրտ. Գիրք Թղթոց, 99—107: — "Պատճէն——" կը յարաբերուի Վրթանիսի առ Մովսէս թղթին (Գիրք Թղթ. 119-127) աղբիւրը:

4 Գիրք Թղթոց, էջ 126:

ամենէն աւելի ընդունակ էր օտար ազդեցութիւնն կրելու։ Այս պարագան աննշանակ չէ եղած ժամանակակից մտաւոր կենաց համար եւ կարելի չէ ալ նկատել, ինչպէս օր. համար ներելի է նկատել Ոսկեբերանի Մեկնութեանց, Բարսղի Վեցօրէից, Եփրեմի, Եւսեբեայ Քրոնիկոնին եւն թարգմանութեանց ազդեցութիւնն իւր դարուն (Ե. դար), երբ համեմատաբար աւելի կիրթ էր եւ ուսեալ եկեղեցական կղերն եւ քաջ ամրակուռ օտար վարդապետութեանց հանդէպ, քան յաջորդող դարուն, երբ մէն մի հատուածի թարգմանութիւն իբրեւ կենսական պարէն մը, ժամանակակից տագնապին դէմ սպառազինելու համար զէնք մը կը կատարուէր։ Այս իսկ պատճառաւ մեծարժէք յարգ հարկ է շնորհել ամէն դոյզն համարուած յիշատակարանի, որ դարուս նշմարն կ'երեւցընէ վրան, — ինքնագիր թէ թարգմանութիւն, — որով միայն կարելի պիտի ըլլայ ուսումնասիրել Զ. Է. եւ յաջորդ դարուց մեր մտաւոր կեանքը եւ աստուածաբանութիւնը աղբիւրներու վրայէն։

2. Այս կարգի գրուածներէն ունինք այսօր ի ձեռին ընտիր հրատարակութեամբ անպայման գնահատելի գործ մը հայերէն հին թարգմանութեամբ Տիմոթէոս Աղեքսանդրացւոյ՝ “Հակաճառութիւնն առ սահմանեալսն ի ժողովոյն Քաղկեդոնի[1]„. գրութիւն մը, որ հակա-

---

1 Տիմոթէոսի եպիսկոպոսապետի Աղեքսանդրեայ Հակաճառութիւն առ սահմանեալսն ի ժողովոյն Քաղկեդոնի. Էջմիածին, 1908, 8° էջք ԼԵ+396+2 Տախտ.։

ռակ Նախնեաց վրայ ըրած մեծ ազդեցութեան, երկար ժամանակ մատնուած էր կորստի թէ յունարէն բնագրովն եւ թէ հայ թարգմանութեամբը. գործը իւր կարեւորութեամբն կ'արժէ առանձինն ուշադրութեան։

Հեղինակն Տիմոթէոս, ժամանակակիցներէն "իւր վտիտութեան համար" ծաղրական անուամբ Aἴλουρος յորջորջուած, զոր Նախնիք թարգմանած են հայերէն "կուզ[1]", էր մին Ե. դարու Բ. կիսուն Միաբնեայց կուսակցութեան պարագլուխներէն, որոնք Ասորիք եւ Եգիպտոս իրենց բովանդակ ուժովն՝ բռամբ, բանիւ եւ գրով ախոյեան հանդիսացան Քաղկեդոնի ժողովոյն սահմանին դէմ։ Տիմոթէոս արդէն Եփեսոսի 449ի ժողովոյն մէջ "առընթեր" էր իւր "Անատողիոս երէց, եղբօր հետ[2] եւ ջերմ կուսակից Դիոսկորոսի, որուն աշակերտած ալ կը թուի եւ ընկերացած անոր աքսորքին ի Գանգրա։

---

1 Յունարէն Aἴλουρος բառն, որ Երուսաղէմայ Յովհ. Հայրապետի առ Աբաս թղթին մէջ (Ա.ՐՐՏ. 1896, էջ 254) փոխուած է "Եղուրոս", երեքպատիկ նշանակութեամբ գործածուած է հիներէն. բառին 1. դասական առումն է "կատու"։ 2. Յետնոց քով առացած է նաեւ "կուզ" իմաստն. այսպէս Ոսկեբ. Մեկն. Մատթէի, ճառ Ը. 121. յուն. τὴν τῶν αἰλούρων θούλην կը թարգմանուի. "Զաղախինն կուզոյն". նոյնպէս Փոտայ առ Զաքարիա թղթին մէջ "Տիմոթէոս Աղեքսանդրացին, որում կատուն կոչեն", ասկէ Գր. Տղայ՝ Թուղթ առ Հիւսիս. վարդապետս. 75 եւն։ Իսկ 3. Նոննոսի թարգմանիչն փոխած է երկիցս Ա.ժէօ (էջ 13, 74), որուն վրայ խօսած ենք այլուր (Հանդ. Ամս. 1904, էջ 71)։ — "Կուզ" անուանակոչութեան մասին հմմտ. Յովք. Հրատարակիչներու, էջ Զ։

2 Հակաճառ. 35։ Հմմտ. Գիրք Կայսերաց. էջ 66–7։

Իւր ասպարէզն ալ եղաւ Աղեքսանդրիա, ուր 457ին յաջողեցաւ խուժանի միջնորդութեամբ զՊրոտերիոս Մկրտարանին մէջ ի կենաց բառնալով՝ յափշտակել պատրիարքական աթոռը. սակայն շուտով ստիպուեցաւ թողուլ գահն (460) համանուն Տիմոթէոսի, «որ անուանեցաւ Փուաս[1]», եւ աքսորուիլ եղբօրը հետ, Կ. Պոլսոյ վրայէն նախ ի Գանգրա եւ ապա ի Քերսոն, ուսկից Լեւոն կայսեր մահուընէ ետքը վերադառնալով ի Կ. Պոլիս՝ Բասիլիսկոսի հրամանաւ գրաւեց կրկին Աղեքսանդրիոյ աթոռը (476). բայց այս անգամ ալ երկար չտեւեց աթոռին վրայ եւ տարին չբոլորած գահավէժ ըլլալով՝ վախճանեցաւ յԱղեքսանդրիա (†477, Յուլ. 31) խոր ծերութեան մէջ, ըստ ոմանց ինք զինքը թունաւորելով[2]։

3. Տիմոթէոսի կեանքը կռուիլ եղաւ թէ բանիւ եւ թէ գրով, բայց դժբախտաբար իւր գրական գործունէութեան մասին շատ դոյզն է մեր ծանօթութիւնը։ Բիւզանդական մատենագիրք իրենց դաւանաբանական գրուածոց մէջ կը յիշատակեն յաճախ Տիմոթէոսի[3] Ἀντιρρητικά

---

1 Գիրք Կայս. էջ 67. յուն. φάως, φόως լոյս բառէն. ըստ Թէոփանեայ կը յորջորջուէր λευκός, սպիտակ։

2 Կենսագրութիւնն գեղեցիկ ի մէջ բերուած է Յառաջաբանին մէջ, էջ Ջ—Թ։ Համմ. եւ J. Hergenröther, Photius, Patriarch von Constantinopel, Regensburg 1867, I. 93–116։

3 Համմ. K. Krumbacher, Geschichte der byz. Literatur, München, 1897, p. 53. ուր սակայն յանուն Տիմոթէոսի իմացուած է Տիմոթէոս Գ. Աղեքսանդրիոյ պատրիարքն (519—535)։

(Հակաճառութիւն) գրութիւնն «ի բազում գիրս»[1], նաեւ Συγγράμματα κατὰ τῆς συνόδου Χαλκηδόνος καὶ τοῦ τόμου Λέοντος (Ճարագրութիւնք առ ժողովն Քաղկեդոնի եւ տումարն Լեւոնի)[2]։ Նման գրուածք մ'ալ կը նշանակէ W. Wright Բրիտանիական Միւսէոնի ասորերէն Ձեռագրաց ցանկին մէջ[3] Տիմոթէոսի «Գիրք ընդդէմ ժողովոյն Քաղկեդոնի» (Cod. Mus. Britt. Addit. 12156), որ 562ին ընդօրինակուած կ'ըսուի[4]։ Ապահովապէս այս երեք խորագիրներն ալ միեւնոյն մատեանն կ'ակնարկեն, որ ի կարգին կու գայ կը հաւասարի հայերէն «Հակաճառութիւն առ սահմանեալս ի ժողովոյն Քաղկեդոնի» գրութեան։ Այս նկատմամբ թէեւ կը պակսին մանրամասնութիւնք, բայց կարելի է հաստատել առանց դեդեւելու Ἀντιρρητικά-ի համար, ինչպէս կը տեսնուի Յուստինիանու թղթէն[5], ուր վկայութիւններ կը բերուին այս մատենէն։ Տիմոթէոս յօրինած է զայս անկասկած իւր աքսորանաց օրերուն ի Գանգրա եւ ի Քերսոն 455—465ի միջոցները։ Հայերէն թարգմանութիւնն կ'ընծայէ առ այս կռուան։ Ա. գիրքը գրուած է 457էն՝ Մարկիանոսի մահուընէ յառաջ եւ Դիոսկորոսի մահուընէ († 454) ետքը, հեղինակն կենդանի կ'ենթադրէ

---

1 Migne, P. gr. *86*, 273—4. *88*, 1127—30.
2 Migne, P. gr. *88*, 437—441.
3 W. Wright, Katal. p. 639–648.
4 ԱՐՐՑ, 1908, էջ 588.
5 Migne, P. gr. *86*, 273—4 = *88*, 1127-8.

(էջ 150) տակաւին զՄարկիանոս († 457), գիտէ Հռոմայ անապատականը (էջ 150) Գենսերիկոսի առջեւ (455)։ Կ'երեւայ թէ յորդորուած է նա գրութեանս Դիոսկորոսի խորհրդով (Հմմտ. էջ 280) եւ Ա. գիրքն արդէն ի Գանգրա սկսած[1]։ Բ. եւ Գ. գրքերը, որոնք կը պակսին հայերէնի մէջ, գրած կ'երեւայ 460ի աքսորքին ժամանակ ի Գանգրա եւ ի Քերսոն, զոնէ Գ. գիրքը հոս գրած է ըստ Ցուստինիանու։ Վերջաբանին խօսքերն ալ զայս կ'ակնարկեն, ուր շատ դառնութեամբ կը խօսի իւր հանգամանաց վրայ եւ կ'ուղղէ սուր խօսքեր ժամանակակից՝ զինքը աքսորել տուող կայսեր (Լեւոնի) դէմ (էջ 331)։

Գեննադիոս Մասիլիացին[2] կը յիշէ իւր De scriptoribus ecclesiasticis գրոց մէջ, թէ թարգմանած է ինքը Տիմոթէոսի առ Լեւոն գիրքը (libellus), ուր Ս. Հարց վկայութիւններով ջանացած է, կ'ըսէ, զկայսրը խաբել, Լեւոնի տոմարն ու Քաղկեդոնի ժողովոյն սահմանն մոլորական ցուցընել, եւ արեւելեան բոլոր եպիսկոպոսները Նեստորական ներ-

---

1 Արտասահմանեցին զԴիոսկորոս "ի Կիւզիկոն նախկին, ապա յՀերակղիա, յետ այսորիկ ի Գանգրացւոյն քաղաք, ի Պափղագոնիա, առ ուր զարշաւանն կատարեաց". Հակաճառ. 147. Հմմտ. ԱՐՐՏ. էջ 588։

2 Գ. Տէր-Մկրտչեան (ԱՐՐՏ, 588) կը շփոթէ անձս Կ. Պոլսոյ պատրիարք Գեննադեայ (458—471) հետ։ Գեննադիոս Մասիլիացի քահանայն հեղինակած է Ե. դարու վերջին քառորդին։ O. Bardenhewer, Patrologie, Freib. 1894.

կայացընել[1]։ Նկարագրութենէն կը տեսնուի թէ ակնարկուած գիրքն անկախ[2] գրութիւն մ'է Հակաճառութենէն, եւ զոր կը յիշատակէ նաեւ Անաստաս քհ. Սինայեցի[3]։

Բայց ասկէ ունի Տիմոթէոս "Տրամախօսութիւն (dialogue) ընդ Կալովմնեայ Աղեքսանդրացւոյ" ուսկից հատուածներ պահած է Ղեւոնդիոս Բիւզանդացի[4]։ Վատիկանի արաբ. Ձեռագրաց մէջ (թ. 172) կայ նմանապէս՝ ապահովապէս իրմէ, դաւանաբանական ճառ մը, զոր լատ. թարգմանութեամբ հրատարակած է Ang. Mai[5]։

4. "Հակաճառութեամբ" դիտած է Տիմոթէոս հերքել Լեւոնի Տոմարը եւ Քաղկեդոնի ժողովոյն սահմանը, կամ մէկ խօսքով՝ ի Քրիստոս երկու՝ աստուածային եւ մարդկային անխառն բնութեանց վարդապետութիւնն դատապարտել իբրեւ հերետիկոսութիւն եւ նոյն Նեստորի եւ Թէոդորոս Մոպսուեստացւոյ վարդապետութեանց՝ հակառակ հին հարց ուսուցածին, եւ թէ պէտք է "զՏէր մեր եւ զԱստուած Յիսուս Քրիստոս մի ասել՝ հանդերձ իւրով մարմնովն եւ նմին զամենայն հատուցանել զաստուածավայելչականն եւ զմարդկութեանն", եւ թէ ըստ մարմնոյ մեզի համագոյա-

1 Migne, P. lat. *58*, 1102.

2 Նոյն կը համարին Հրատարակիչք (Յուշք. ԺԱ.) եւ Գ. Տէր-Մկրտչեան (ԱՐՐՏ, 588)։

3 Migne, P. gr. *86*, 274.

4 Migne, *86*, 275–76.

5 Ա. Migneի, անդ, 269—274.

կան ըլլալով հանդերձ “եկաց մնաց եւ այսպէս Աստուած„ (հմմտ. էջ 1)։ Կամ ըստ Գեննադեայ կ'ուսուցանեն Տիմոթեանք. “Բանն առաւ մարմին պահելով թէ աստուածային գոյութիւնն եւ թէ մարմնոյն բնութիւնն. եւ ընկերակցութեամբ երկուքին առանց խառնման՝ Որդւոյն Աստուծոյ մի անձը զգեցաւ մարմին„[1]։ Զայս կը ջանայ ապացուցանել երկար վկայութիւններով սուրբ հարց գրուածներէն (էջ 2—34 եւն), զորոնք առաջիկայ հարցին համար կը նկատէ “հոգեկան զրահս ուղղափառ հաւատոյ„ (էջ 36)։ Իբրեւ հիմ իւր հաւատոց Ս. Հարց վկայութիւնքը ի մէջ բերելէ ետքը կ'անցնի հակառակել Լեւոնի Տոմարին (էջ 52—144) եւ Քաղկեդոնի սահմանին (էջ 144—256) դէմ. հոս իւր ընտրած յօրինուածութիւնն է նախ ի մէջ բերել Տոմարէն հատուած մը, ցուցընել համամիտ Նեստորի, Պաւղոս Սամոստացւոյ եւ Թէոդորետեայ վարդապետութեանց, առ այս Ս. Հարց վարդապետութիւնը եւ ապա իւր խորհրդածութիւնքը։ Գրութիւնս այսպիսի յօրինուածութեամբ անպայման յարգ կը ստանար ժամանակակից վառ վիճմանց ժամանակ եւ անսպառ աղբիւր մը երկաբնակներու դէմ վկայութիւններ հայթայթելու համար։ Այս իսկ պատճառաւ քիչ ժամանակէն տարածուած է ամէն անկիւն։

5. Հայերէն թարգմանութիւնն պահուած է Էջմիածնի թ. 1988 (կար. 1945) Ձեռագրին

---

1 Migne, P. lat. 58, 1106.

մէջ, զոր առաջին անգամ ծանօթացուց գիտնական աշխարհին կարապետ Վ. Տէր-Մկրտչեան Արարատի մէջ 1897ին «Տիմոթէոս Էլուրոսի նորագիւտ երկը եւ նորա մի քանի նոր հատուածները նախնի հայրերից առած„ յօդուածով[1]. երբ կը խոստանար նաեւ հրատարակել ամբողջութեամբ, եթէ ձեռնտու ըլլային պարագայք։ Գործը մնաց անյաջող մինչեւ ներկայ տարիս, երբ աջակցութեամբ Երուանդ Վրդ. ի Տէր-Մինասեանց եւ ծախիւք Սուքիաս Արքեպ. ի Պարզեանց լոյս տեսաւ «Տիմոթէոսի եպիսկոպոսապետի Աղեքսանդրեայ Հակաճառութիւն առ սահմանեալս ի ժողովոյն Քաղկեդոնի„ խորագրով ներքեւ՝ ամենայն մասամբ համապատասխան գիտնական դարուս պահանջմանց[2]։ Հրատարակութեան հիմ առնուած է Էջմիածնի յիշեալ ծանօթ մի միակ մագաղաթեայ ընտիր Օրինակն՝ միջին մեսրոպեան գրով։ Հրատարակիչներու կարծեօք «այն մագաղաթը, որի վրայ նա գրուած է, այնչափ հին է, եւ ...ձեռագրի գիրը այնպիսի հնութեան դրոշմ է կրում, որ դժուար կարող

---

1 ԱՐՐՏ, 1897, էջ 251—257։

2 Լուրջ Յառաջաբանն (էջ Ե—ԻԴ), Բովանդակութիւնն Նիւթոց (էջ ԻԵ—ԼԵ), Ցանկն վկայութեանց Ս. Գրոց (էջ 343—354), Ցանկն յատուկ անուանց (էջ 355—361) եւ Ցանկն Նիւթոց (էջ 362—396) գեղեցիկ թարգմաններ են երկու լուսատիպ տախտակներովն Հրատարակչաց հմտութեան՝ նախնեաց երկերն հրատարակելու հանգամանաց։ Ներում ի գիտողութիւն մ'առ այս. փափաքելի էր «Ցանկ Նիւթոցն„ փոքր ինչ ընդարձակագոյն տեսնել, ներս առնուած նաեւ նորակերտ եւ նորագիւտ բառերն, որոնցմով բաւական հարուստ է մատենագրութիւնս։

է ձեռագիրը Թ—Ժ. դարից այս կողմ գրուած լինել»։ Այսպիսի հնութեան մէջ գեղեցիկ կը պատկերէ ձեռագիրն նաեւ բնագրին հին ուղղագրութիւնն եւ գրչութեան հնախօսութիւնն. առ այս դրած են նմանատպութեամբ իբրեւ նմոյշ երկու էջ (տախտակ Ա. եւ Բ.)։ «Այս տեսակէտից, կը գրեն հրատարակիչք, լեզուագէտների եւ բանասէրների համար ներկայ գրուածքը առատ նիւթ է մատակարարում» (Յուշբ. էջ ԻԲ.)։ Ձեռագրին ընթերցուածք այսպիսի նպատակաւ պահպանուած են հրատարակութեանս մէջ ամենայն ճշդութեամբ[1]։

6. Թարգմանութիւնն կատարուած է ուղղակի յունարէն բնագրէն, որ կորսուած է այսօր։ Յառաջ քան թարգմանութեան հանգամանքներն դիտելն, խնդրոյ արժանի է հոս հայերէն թարգմանութեան ամբողջութիւնը, որուն մասին զլացած են Հրատարակիչք իրենց խօսքը։ Կարեւոր է այս կէտի ուսումնասիրութիւնը, վասն զի ներկայ հրատարակութեանս մէջ ունինք միայն մէկ գիրք, մինչդեռ յունարէնն երեք գրքի մէջ գրուած կ՚աւանդուի. այսպէս Յուստինիանոս կայսր իւր Ընդդէմ միաբնեայց գրքին մէջ կոչումներ կ՚ընէ Տիմոթէոսի Հակաճառութեանս

---

[1] Աւելորդ է ըսել թէ կիտադրութիւն եւ ինչ ինչ յայտնի վրիպակաց ուղղութիւն մուծուած է հրատարակութեանս մէջ, ծանօթութեանց մէջ նշանակելով միշտ ձեռագրին ընթերցուածն։ Կիտադրութիւնք դժբախտաբար միշտ որոշ կանոնի հետեւողութեամբ եղած չեն եւ ոչ միօրինակութեամբ։ Կամայականութիւնն յերեւան կ՚ելլէ մանաւանդ մի եւ նոյն հատուածի այլ եւ այլ կրկնութեանց մէջ։

Գ. գրոց Դ. եւ Ը. գլուխներէն[1], որոնք գոյութիւն չունին հայերէնին մէջ, որ միայն Ա. գիրքն կը ներկայացընէ։ Մանր միտ դնելով հայերէն թարգմանութեան, կը նշմարուի հոն ալ ակնարկութիւն այս մասին. այսպէս Տիմոթէոս իւր վերջաբանութեան մէջ կը գրէ. “Շարագրեցի նախ այսորիկ մատեան Աստուծոյն բայից, որպէս ուսայ ի սրբոցն աւետարանչաց եւ ի սրբոց առաքելոց եւ ի սրբոց մարգարէից եւ ի սրբոց եւ ուղղափառաց եպիսկոպոսապետաց„, ուր խօսած է զՔրիստոս “յերկուս բնութիւնս„ բաժանողներու դէմ (էջ 329—30)։ Այս մատեանն ըստ մեզ է Հակաճառութեան Ա. գիրքը՝ հայերէն թարգմանութեանս 1—314 էջերը, զոր գրած է 455—457ի միջերը։

Գրութեանս վրայ բաւական ատեն անցնելէն ետքը, իւր բացատրութեամբն “իբր յոլով ամանակաւ„, կ'ըսէ, “դարձեալ... ըստ չափոյ զոր աւանդեաց ինքն Տէր իմաստութեան ինձ նուաստիս, գրեցի եւ այժմ յերկուս մատեանս, ընտրեալ դարձեալ ի սրբոց գրութեանց եւ զվարդապետութիւն սրբոցն եւ ուղղափառաց եպիսկոպոսապետացն„ (էջ 330)։ Շատ պարզ է հոս ալ իմաստը. եւ այսու բաղկացած կ'ըլլայ Տիմոթէոսի գործքը երեք գրքէ։ Հայերէն թարգմանութիւնն թէեւ ամբողջութեամբ հասած չէ մեզի, բայց կը նշմարուին Բ. եւ Գ. գրքերէն հետքեր. ըստ մեզ ներկայ հրատարակութեանս 1—316 էջերն Ա. գիրքն կը կազմեն (որուն

[1] Migne, P. gr. *88*, 1127—28.

256—314 էջերն դրուած են իբր յաւելուած. Հմմտ. 256. իսկ 314—16 էջերն են Ա. գրոց վերջաբանն)։ Էջ 316 կը սկսի Բ. գիրքն, որմէ սակայն միայն խորագիրն ունինք, ուսկից կը տեսնուի թէ Ա. գրոց բովանդակութեան հետ նոյն էր նիւթն։ Իսկ Գ. գրոց մասն կ՚երեւան էջ 317 դրուած յաւելուածք, որոնց նիւթն բոլորովին անյարիր է Ա. գրոց հետ. վերջաբանն ալ Գ. գրոցն է։ Հրատարակիչք (էջ ժ) վերջաբանին մէջ յիշուած “Աստուածոյն բայից” մատեանով Տիմոթէոսի ինքնուրոյն մէկ աշխատութիւնն կ՚ենթադրեն, իսկ “գրեցի եւ այժմ յերկուս մատեանս” խօսքերն կ՚առնուն ներկայ Հակաճառութեանս մասին, զոր երկու գրքէ բաղկացեալ կ՚ենթադրեն (Ա. մաս, էջ 2—34. Բ. մաս 52 ցվերջ)։ Բայց անտեղի է այսպիսի մեկնութիւն, այնու որ այս Բ. մաս համարուածն անբաժին կերպով կը յաջորդէ առաջնոյն, եւ հեղինակն ըսած էր արդէն առաջին էջերուն մէջ (էջ 1, 52) թէ նախ Ս. Հարց վկայութեամբ պիտի ցուցընէ մարդեղութեան վարդապետութիւնն եւ ապա պիտի վիճէ Լեւոնի Տոմարին դէմ[1]։

1 Հեղինակն Տիմոթէոս Ա. գիրքն ալ բաժնած է այլ եւ այլ գլխոց կամ մասերու, ըստ պէսպիսութեան նիւթոց. Ա. գլուխ՝ Վկայութիւնք Ս. Հարց (էջ 1–52). Բ. գլուխ՝ Հակաճառութիւն ընդդէմ տոմարին Լեւոնի (էջ 52–144) եւ Գ. գլուխ՝ Հակաճառութիւն առ սահմանեալս ի ժողովոյն Քաղկեդոնի (էջ 144—256)։ Այս գլխակարգութեան զանազանութիւնն զգալի է ներկայ հրատարակութեանս մէջ. այսպէս կայ յատուկ վերջաւորութիւն Ա. գլխոյն վերջը. եւ Բ. գլուխն կը սկսի “Հակաճառական երկրորդ զտոմսէն Լեւոնի” (էջ 52) սկզբնաւորութեամբ։ Նոյնպէս

7. Արդեօք ամբողջութեա՞մբ՝ երեք գրքերն ի միասի՞ն թարգմանուած էին ժամանակին եւ ապա կորսուած մաս մը (Բ. գիրքն եւ Գ. գրոց մէկ մասը)։ Հրատարակիչք բան մը չեն նշանակեր Ձեռագրին թերութեան մասին։ Պէտք է դիտել որ Ձեռագրին մէջ Բ. գրոց խորագրով կ'աւարտի էջը, այնպէս որ անտեղի չէ ենթադրել Ձեռագրին մէջէն թերթերու անկուած։ Հնոց ծանօթ կ'երեւայ աւելի ընդարձակ բովանդակութեամբ քան որ մենք ունինք։ Ցուրտաւայ Մովսէս եպիսկոպոսն ունէր "զգիրս" Տիմոթէոսի "բովանդակ"[1]. դժբախտաբար անեզական բառն "գիրք" կը մթագնէ խօսքին իմաստն, թէեւ "զգիրսն բովանդակ" թուոց յաճախութիւն կը ցուցընէ։ Նոյնպէս մութ է Պետրոսի (Անտիոքացւո՞յ[2]) թղթոյն խօսքերն. "Եւ ունի քո աստուածսիրութիւնդ զամենապատուականին եւ զերանելի հաւրն մերոյ Տիմոթէոսի զգիրս՝ որ ընդդէմ Քաղկեդոնի ժողովին, ...գիտէ քո

մասնաւոր սկիզբը մ'եղած է Բ. գլխոյն՝ [Հակաճառութիւն] ի ժողովն Քաղկեդոնի (էջ 144)։ Թէ ինքն հեղինակն իսկ զատ գլուխ մ'ենթադրած է զայս Բ.էն, յաճախ կ'ակնարկէ հոս եւ հոն. մտադրութեան արժանի է հետեւեալը. էջ 170. "Նախացուցեալ իսկ եւ զայս ի հակաճառականին թղթոյն Լեւոնի", որով Բ. գլուխն կ'ակնարկուի։ Յուստինիանոս Ը. գրոցս Բ. գլխէն հատուած մ'ի մէջ բերելով կը գրէ. Πάλιν Τιμόθεος ὁ βλάσφημος ἐν τῷ δευτέρῳ τῶν Ἀντιρρητικῶν αὐτοῦ λόγων οὕτως λέγει (Migne 86, 273), այս է. "Դարձեալ Տիմոթէոս հայհոյիչն յերկրորդում Հակաճառական բանից իւրոց ասէ այսպէս", հատուածն կը համապատասխանէ Հայ. թարգմ. էջ 67, 5–13 տողերուն։

1 Գիրք Թղթոց, 140։

2 Հմմտ. Նորայրի թուղթը. Հանդ. Ամս. 1908, էջ 156։

իմաստութիւնդ յառաջասացելոց գրոց երանելոյն Տիմոթէոսի„։ Այս մթութիւնն կը պարզէ սակայն Էջմիածնի թ. 454 Ձեռագիրն, ուր կը գտնուի 4 հատուած Տիմոթէոսի Հակաճառութենէն (հմտ. էջ 335—342). հատուածներուն երեքը կայ Հակաճառութեան մէջ. բայց ոչ չորրորդը "Նորին (Տիմոթէոսի) ընդդէմ Լեւոնի գլխոյն ԽԲ. Հենգն. Լվ. յօրինեալ„ խորագով որ ոչ այլուստ ըլլալու է, բայց եթէ Բ. եւ Գ. կորուսեալ գրքերէն։ Նման հատուած մ'ալ կը գտնուի Ստեփանոս իմաստասէրի քով[1], որ նոյնպէս գոյութիւն չունի ներկայ հրատարակութեան մէջ։ Զարմանալի չէ մեր ենթադրութիւնն. ծանօթ ձեռագիրն միակ է. հետեւաբար չունի ամբողջութեանը որ եւ իցէ վկայ։ Պէտք է համեմատել առ առաւելն Բրիտ. Միւսէոնի ա-

1 Հմտ. Գ. Տէր-Մկրտչեան, ԱՐԲՏ. 1902, էջ 318–400. արտատպ. Վաղարշապատ, 1902 էջք 35։ Ստեփանոս երեք հատուած ունի "Տիմոթէոս„էն, տող 127—131 = Տիմ. էջ 218, 24. տող 132—137 = Տիմ. 218, 32. 230, 15. իսկ տող 138—145 չկայ այժմեան հրատարակութեան մէջ։ Ստեփանոս բաց ասկից ունի Հակաճառութենէն ուրիշ երեք հատուած ալ. երկուքը Կիւրղի Աղէքսանդրացւոյ Պարապմանց (տող 113–126 = Տիմ. 198, եւ տող 461–470 = Տիմ. 198) գրքէն, եւ մին Յովհ. Երուսաղէմացւոյ ի Հաւատոյ Ճառէն (տող 478–484 = Տիմ. 276) Հմմտ. այս մասին եւ ԱՐՐՏ. 1908, էջ 565, ուր մատնանիշ ըրած է Գ. Տէր-Մկրտչեան միայն երեք հատուած։ Ուշադրութեան արժանի է այս տեսակէտով նաեւ Սահակայ Վրդ. առ Փոտ պատասխանն, ուր (Գիրք Թղթ. 284–85) կան հատուածներ Նեստորի գրութիւններէն. հատուածներու մէկ մասն վերցուած է Հակաճառութեան երկրորդ գլխէն. ապահովապէս միւս մասն ալ պէտք է փնտռել կորսուած գրքերու մէջ։ Այս մասին կը խօսինք վարը։

ասորերէն թարգմանութեան հետ, եթէ համեմատ է ամէն մասամբ հայոյն։ Հրատարակիչք Փր. Լօօֆսի ասորերէն թարգմանութենէս յառաջ բերած Նեստորի հատուածներն համեմատելով հայ թարգմանութեան հետ կը գրեն. “Այդ հատուածները մասամբ համապատասխանում են այս գրքի մէջ եղածներին, բայց մեծաւ մասամբ տարբեր են եւ կարծել են տալիս, թէ Բրիտանական Մուզէումի ասորերէն ձեռագիրը Տիմոթէոսի մի այլ նման աշխատութիւն է բովանդակում իւր մէջ„ (էջ ԺԲ)։ Ընցնինք կարեւորագոյն խնդրոյն՝ հայերէն թարգմանութեան ժամանակին։

8. Հայերէն թարգմանութիւնն կատարուած կը համարին հրատարակիչք Ներսէս Բ. Աշտարակեցւոյ (548/9—556/7) օրով, հիմնուած գլխաւորաբար Փոտի առ Զաքարիա կաթ. գրած թղթոյն մէկ տեղւոյն վրայ, ուր կ’ըսուի[1] թէ Ներսէս Բ. Աշտարակեցի “արար զժողովն ի Դվին... ի ձեռն Աբդիշոյի ասորւոյ, որ եկեալ էր ի Սասանոյ ի Սարեփխոյ վանիցն եւ այլք ընդ նմա, որ ձեռնադրեցան եպիսկոպոսք ի Ներսիսէ եւ ընկալան զԴիոսկորոս եւ զՓիլակսոն եպիսկոպոս ի Նաբուք քաղաքէ եւ զՏիմոթէոս Աղեքսանդրացին, որում Կուզն կոչեն, որ զգրեանս թարգմանեցին ի Հայս, որ կոչին յետին թարգ-

---

1 Ցառաջբերութիւնն մեր մէկ Ձեռագրին (անթուականին) համեմատ է. Ն. Մառի հրատարակութիւնն ի Православный палестинскій сборникъ, томъ XI, С.-Петерб. 1892, էջ 181, շատ խանգարուած է։

մանիչք. որ ունի բազում չարախօսութիւն վասն ժողովոյն Քաղկեդոնի ի Նոցին թարգմանութեանն .... ։

Փոքր կարեւոր տողերս առնուած են De rebus Armeniae գրութենէն, որ Է. դարու մէջերն գրուած է եւ աւելի պարզագոյն ունի այն պարբերութիւնս։ Անանուն հեղինակը կը գրէ. "Այն առեններ Տիմոթէոս եպիսկոպոսը ինքն իրմէ շատ մը ճառեր գրեց ի Քրիստոս երկու բնութիւն դաւանողաց դէմ. եւ Քաղկեդոնի ժողովոյն դէմ նախատինքներ", եւ քիչ մը վերջը. Ներսէս Աշտարակեցւոյ օրով "ի Դուին ժողով մը գումարուեցաւ, երբ նաեւ Քաղկեդոնի ժողովն իբրեւ. Նեստորական նզովեցին ըստ բանից Աբդիշոյի, վասն զի նոյն ժամանակ թարգմանեցին (ἑρμήνευσαν) Աբդիշոյէն բերուած գրութիւններն, այն գրութիւններն, զորոնք յիշեցինք վերը եւ որոնք Տիմոթէոս եւ Փիլոքսենոս (παρὰ Φιλιχου) ասորիներէն գրուած էին Քաղկեդոնի ժողովոյն եւ Քրիստոսի երկու բնութեանց դէմ"[1]։

Անանունի այս տեղեկութիւնն պայծառ լոյս կը սփռէ իրին վրայ։ Այլուստ ծանօթ է Ներսիսի օրով (555—56) գումարուած Դունոյ ժողովն, ուր յիրաւի ներկայ էր եւ Աբդիշոյ[2]. դարձեալ Աբդիշոյի առ Ներսէս գալն ասորի վանականներու հետ եւ եպիսկոպոս ձեռնադրուիլը[3] (548

1 Migne, P. gr. *132*, 1243—4։
2 Գիրք Թղթոց, 72, 77։
3 Անդ, 43-69։

—549 °). եւ ատոր շնորհիւ Աբդիշոյի ձգած մեծ ազդեցութիւնն Ներսիսի եւ Հայոց դաւանութեան վրայ[1]։ Հետեւաբար որ եւ իցէ հիմ չունինք անընդունելի նկատելու Անանունի եւ Փոտայ տեղեկութիւնքն։ Վերջնոյս քով կան յիրաւի սխալներ, այսպէս թէ Ներսէս բաց ի Աբդիշոյէն ուրիշ եպիսկոպոսներ ալ ձեռնադրած է. բայց այս անվնաս է առաջիկայ խնդրոյս համար։

Ըստ այսմ պէտք է առանց դեդեւելու ընդունիլ Տիմոթէոսի գործոյն թարգմանութիւնն նորեկ ասորիներու ձեռօք՝ կատարուած ընդ մէջ 548—557 տարիներու. որուն մէջ նաեւ Աբդիշոյ մեծ դեր խաղացած է[2]։ Հրատարակիչք կը միտին մինչեւ անգամ անոր ձեռքէն ելած համարիլ բովանդակ թարգմանութիւնն, որ ընդունելի չէ. Աբդիշոյ իւր գրութեանց մէջ աւելի պարզախօս է եւ հայերէնագէտ, մինչ հոս գործածուած է հայերէն մը, որ ամէն մասամբ օտարի ձեռք, բերան եւ քիմք կը մատնանշէ։ Հայերէնն յունարէնի վրայ ձեւուած խժալուր, օտարաշուրթն լեզու մ'է, դժուարահասկնալի եւ ան-

1 De rebus Armeniae, Migne, P. gr. *132*, 1244–5

2 Մատագրութեան արժանի է հոս այն պարագան որ Տիմոթէոսի գրութեանց հետ միաժամանակ թարգմանուած կ'աւանդուին Փիլոքսենեայ գրութիւնք. եւ յիրաւի ինչպէս այլուր ունեցած ենք առիթ ըսելու, 548—550 ծանօթ էին Աբդիշոյի Փիլոքսենեայ գրութիւնք հայերէն թարգմանութեամբ (Հմմտ. Հանդ. Ամս. 1907, էջ 255) ցանկալի էր գտնել զայն ալ ամբողջութեամբ եւ ի լոյս հանել։

3 Հմմտ. իւր Թղթերը ի Գիրք Թղթոց, էջ 59–69։

ճաշակ։ Թարգմանիչն նոյն իսկ լեզուին ընտելական ասութեանց¹ անծանօթ է, որ անըմբռնելի է ազգայնոյ մը համար։

Գ. Գալուստ Տէր-Մկրտչեան իր յօդուածին մէջ՝ «Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան հայ թարգմանութեան ժամանակը եւ Ս. Գրքի երրորդ կամ նորաբեր հայ թարգմանութիւնը»², փորձեց ուրիշ շրջան մը փոխադրել թարգմանութեան ժամանակը, զոր կարեւոր է առնուլ հոս ի նկատի։ Տէր-Մկրտչեան հիմնուած Տիմոթէոսի սա խօսքին վրայ. «Երանելւոյ Հօր մերոյ Դիոսկորոսի եպիսկոպոսապետի Աղեքսանդրեայ եւ խոստովանողի՝ ի գրեցելոյ առ Սեկունդինան թղթոյ ի Գանգրայ յեքսորաց. ուր զընթացսն կատարեաց ի Քրիստոս։ Թուղթ եւթներորդ։ Սեպտեմբերի երկրորդ։ Հոռի վեցերորդ»³, կը նկատէ թէ հայ եւ յոյն ամսաթուերն զուգադէպ կու գան միայն 480—484 տարիներուն. հետեւաբար այդ քառամեայ շրջանն է Հակաճառութեան թարգմանութեան թուականը, գրուած հայ թարգմանչէն⁴։ Բայց այս մի միակ ատրիճանն բաւակա՞ն է այդպիսի բարձրաբերձ հետեւութեան բարձրանալու։

Գովելով հանդերձ Տէր-Մկրտչեանի սուր նկատողութիւնը, չենք կրնար համակարծիք ըլլալ

¹ Զոր օր. Մենանդէն, փոխ. Միածին. Մենդեան: փոխ. Ցաճար. Գրատոփ, փոխ. Դրախտ. Նորաբեան, փոխ. Կարողութիւն, եւ այն անթիւ յաճախութեամբ։

² Արրտ. 1908, էջ 564—589։

³ Հակաճառ. էջ 277։

⁴ Արրտ. 570—576։

իրեն։ Ընտրուած կէտն այնպէս աներկբայ կռուան մը չէ, որ խոհեմութիւն համարինք հոն գամա-գիտ ըլլալ անկասկած, եւ հարեւանցի անցնիլ։ Անցնինք ընձեռուած կռուաններ։

Տիմոթէոս Ճառերի թուականով ու-զած է յայտնել Դիոսկորոսի մահուան տա-րին։ Ձեռագիրն տուած ընթերցուածն Համաձայն չէ ամէն մասամբ։

Դիոսկորոս մեռաւ ի Գանգրա 454, Սեպտ. 4ին[1]։ 454 տարին կը համապատասխանէ Ութ-ներորդ Ինդիկտիոնի։ Յիշեալ նախադասու-թեան մէջ խօսքն Դիոսկորոսի մահուան վրայ ըլլալուն անպատճառ կապ մը ենթադրելու է յաջորդող թուերուն հետ։ Այսպէս կ՚ընդհատեն առ երեւոյթս «Թուղթ եւթներորդ» բառերը։ Անյայտ էր Տիմոթէոսի գրութեան տեղն եւ առ որ կ՚ուղղուի յայտնելէն ետքը նշանակել Դիոսկորոսի թղթոյն թիւը «եւթներորդ»։ Դիոս-կորոս առանց տարակուսի ոչ թէ 7, այլ 77 թուղթ գրած էր իր երկար կենաց տաք օրե-րուն, որով դժուարին էր մահուընէ քիչ վերջն անոնց դասաւորութիւնը։ Եւ յիրաւի այլուր (էջ 279) չի գործածեր այսպիսի թուարկու-թիւն։ Անտեղի է ուրեմն «Թուղթ» բառն. պէտք է ըլլալ ԻՆԴԻԿՏԻՈՆԻ ԵՒԹՆԵՐՈՐԴ։

Այս սրբագրութենէն ետքը կարելի է խնդիր ընել մահուան օրուան վրայ. թէ ինչ հի-մամբ Սեպտեմբերի չորրորդն կը նշանակուի

1 O. Bardenhewer: Patrologie, p. 350.

մահուան օրն, անյայտ է ինձ։ Հոս ծանրակշիռ պէտք է նկատել աւելի Տիմոթէոսի վկայութիւնն, որ ականատես իսկ էր։ Մեծ անջրպետով հեռու չէ Սեպտ. Բ.ը Դ.էն։ Բայց կարելի է խնդիր ընել նաեւ Սեպտեմբերի Բ. ընթերցման վրայ, որ չի համապատասխաներ Հոռի վեցերորդին հետ։ Դժուարութիւնս բառնալու վերջին, թէեւ բռնազբօսիկ, միջոցն է ընթեռնուլ Սեպտ. երկրորդի տեղ «իններորդ», որ օրն ճշդիւ կը համապատասխանէ Հոռի վեցերորդին 454 տարւոյն համար։ Հայերէն գրերն Բ. եւ Թ. իրարու մեծ նմանութեան պատճառաւ ենթակայ են շփոթութեան։ Այսու կերպով մը կը հաշտուին Սեպտեմբերի Բ. (Թ.) եւ Հոռի Զ. ընթերցուածները։ Սակայն այսպիսի հաստատութեան մը համար հարկ է կանխաւ ենթադրել, թէ գիտակցութեամբ մտած է թարգմանիչն տոմարագիտական մանր խնդրոց մէջ. իսկ թէ ունէ՞ր այսպիսի հմտութիւն թարգմանիչն, զայն դժուարին է գուշակել հակաճառութենէն։ Դիոսկորոսի մահուան ճշգրիտ օրն միայն կրնայ որոշ զայն։

Յամենայն դէպս անպատեհ է փոփոխել վերջին տարիներս Հայոց դաւանաբանական պատմութեան համար ստացուած ժամանակագրութիւնը եւ անհիմն նկատել մերձաւոր ժամանակակցի մը վկայութիւնն, որ միւս կողմանէ այնպէս միաբան է Զ. դարու Եկեղ. եւ Մատենագրութեան պատմութեան հետ։

10. Թարգմանութիւնն կատարուած է շատ ստրկական ոճով, ոճ մը, որ յատուկ է ընդհան-

րապէս ամէն հելլենաբան թարգմանութեանց.
բայց իւր տեսակին մէջ քաջ կրնայ մրցիլ "Դա-
ւիթ Անյաղթի„ թարգմանութեանց լեզուին
հետ։ Թէեւ չունինք համեմատութեան միջոց
յունարէնի հետ, վասն զի կորուսած է յունա-
րէն բնագիրն, բայց փոքրիկ հատուած մը կու-
տայ հնարաւորութիւն ամփոփ գաղափար մը
կազմելու թարգմանութեան արուեստին վրայ։
Հատուածն Անտիոքի (Պիսիդեայ) Երեքթէոս
եպիսկոպոսի ճառէն հանուած է, զոր Ang. Mai
յոյն Ձեռագրաց մէջ գտնելով հրատարակած է
իբրեւ նշխարք Երեքթեայ կորուսեալ ճառէն[1].
յունարէնն ժամանակաւ առնուած կ'երեւայ Տի-
մոթեայ Հակաճառութեանց (հայերէնն էջ 277)։
Կը դնեմ հոս յոյն բնագիրն եւ հայ թարգմա-
նութիւնն տակէ տակ.

Τοῦ μακαρίου Ἐρεχθίου ἐπισκόπου
Երանելւոյ Երեքթեայ եպիսկոպոսապետի

Ἀντιοχείας τῆς Πεισιδίας, ἐξ ὁμιλίας λεχθείσης
Անտիոքի Պիսիդեայ՝ ի խօսից ասացելոց

ἐν τοῖς ἁγίοις Θεοφανείοις ἐν τῇ Μεγάλῃ
ի սուրբ Աստուածայայտնութիւնն ի մեծի

ἐκκλησίᾳ Κωνσταντινουπόλεως, καθεζομένου τοῦ
եկեղեցւոջ Կոստանդինուպոլսի նստելով

μακαρίου ἐπισκόπου Πρόκλου.
երանելւոյ եպիսկոպոսի Պրոկղի։

Παρὰ Ἡσαΐου τοῦ μεγάλου προφήτου
Առ Եսայեայ մեծի մարգարէի

ἠκούσαμεν Θεοῦ κερυττομένου· Παιδίον γὰρ,
Աստուածոյ քարոզելոյ մանկանն՝ քանզի մանուկ,

1 Առ Migneի. P. gr. 86, II, 3321.

φησὶν, ἐγεννήθη ἡμῖν, καὶ Υἱὸς ἐδόθη ἡμῖν,
ասէ, ծնաւ մեզ, Որդի եւ տուաւ մեզ,

οὗ ἡ ἀρχὴ ἐγενήθη ἐπὶ τοῦ ὤμου αὐτοῦ. καὶ
որոյ պետութիւն եղեւ ի վերայ ուսոց իւրոց. եւ

καλεῖται τὸ ὄνομα αὐτοῦ μεγάλης βουλῆς
կոչի անուն իւր մեծի խորհրդոյ

ἄγγελος, θαυμαστὸς, σύμβουλος, Θεὸς ἰσχυρὸς
հրեշտակ, սքանչելի, խորհրդակից Աստուած հզօր

ἐξουσιαστὴς, ἄρχων εἰρήνης, πατὴρ τοῦ
իշխանական պետ խաղաղութեան հայր

μέλλοντος αἰῶνος. Μήτις οὖν ὑμᾶς
հանդերձելոյ յաւիտենի։ Մի որ այսուհետեւ զձեզ

Ἰουδαϊκὸς ἐξαπατήσειεν κλάδος· οὕτω γὰρ
հրեական պատրեսցէ ոստ, քանզի այսպէս

καλεῖν τοὺς αἱρετίζοντας ἄξιον, ὡς ἄλλο
կոչել զհերձուածականսն արժան, իբր այլ ոմն

μὲν τὸ τεχθὲν, ἄλλο δὲ ὁ ἐν αὐτῷ κατοικήσαν
ծնիցեալն, իսկ այլ ի նմին բնակեալ

Θεὸς, καὶ ὡς δύο τοῦ γεννηθέντος αἱ φύσεις·
Աստուած, եւ իբր երկու ծնիցելոյն բնութիւնք.

ἂν γὰρ τις τοῦτο λέγειν τολμήσειεν, τὸν
քանզի եթէ որ զայս ասել համարձակեսցի

Ἐμμανουὴλ αὐτῷ μόνον ἀντίθες, καὶ χαλινὸν
զԷմմանուէլն զայս միայն ընդդէմ դիր եւ սանձ

σιωπῆς τὴν τοῦ ὀνόματος ὑποδέξεται μνήμην.
լռութեան զանուանն կալցի յիշողութիւն։

Οὐ γὰρ δύο φύσεις, ἀλλὰ σαρκωθέντα
Քանզի ոչ երկու բնութիւնք, այլ զմարմնացեալն

Θεὸν ἡ Παρθένος μυστικῶς ἀπεκύησεν,
Աստուած Կոյսն խորհրդաբար բացասաղմնեաց

δεξαμένη τὴν τοῦ Πνεύματος ἐπιφοίτησιν.
ընկալեալ զՀոգւոյն վերեկութիւն

Εἰ μὲν γὰρ ἀνθρωπίνης σπορᾶς βλάστημα ἦν
Քանզի եթէ մարդկային էր սերման բողբոջ

ὁ Χριστός, συνετίθεμεν ἄν, τὸν καρπὸν κατὰ
Քրիստոս, հաւանէի արդեւք զպտուղն ըստ

τὴν φύσιν μιμεῖσθαι τὴν ῥίζαν· εἰ δὲ ἐκ
բնութեան քաղաքել արմատոյն. իսկ եթէ

Πνεύματός ἐστιν ἁγίου, κατὰ τὴν τοῦ ἀρχαγγέλου
Հոգւոյ է սրբոյ, ըստ հրեշտակապետին

φωνήν, Θεὸς ὁ τεχθείς, ἐπειδὴ καὶ Θεὸς
ձայնի Աստուած ծնիչեալն, վասն զի եւ Աստուած

ὁ τῆς γεννήσεως πρόξενος.
ծննդութեան առիթ։

Բնագրին համեմատութեամբ ուրիշ կտորներու այսչափ պարզ ըլլալովն հանդերձ, թարգմանութիւնն բառ առ բառ յունարէն չարադասութեան վրայէն կատարուած է։ Յունարէնի այս նմանողութիւնն, ինչպէս ուրիշ նման գրուածքներէ ալ յայտնի է, յառաջ բերած է հայերէնի հոգւոյն հակառակ անթիւ բառեր, ասացուածքներ եւ դարձուածքներ, որոնք անտանելի են հայ ականջին։ Այսպէս յաճախ կը տեսնուին. զեր զբնութիւնն, բառական յուն. ὑπὲρ φύσιν, հոմաբնիմ, ὁμο-φυσής եւն. զարմանալին է մանաւանդ κατὰ τὸν τῆς οἰκονομίας λόγον, ἤτα τὴν ἐκ γυναικὸς γέννησιν նախադասութեան թարգմանութիւնն[1] "ըստ տնաւրէնութեանն բանի կամ զ'ի կնոջէն ծննդութենէ". ուր առաջին պարբերութիւնն թարգմանուած է ճշդիւ, իսկ երկրորդին մէջ մոռնալով թէ առաջին նախադիրն

1 Հակաճառ. էջ 67, յուն. Migne, P. gr. 88, 1130.

κατὰ իւր խնդիրն երկրորդին մէջ ալ ունի (κατὰ... τήν ...γέννησιν), բառական թարգմանած է հայցական. «ծնելութենէ», բացառական ձեւն կարդալու է անշուշտ ծնելութիւն։

Լեզուի այսչափ փոփոխութեան հանդէպ անբացատրելի է թարգմանչին տրամադրութիւնն ուրիշ կերպ, բայց եթէ ընդունելով թարգմանիչն օտարազգի մը[1], որ իւր թերի հայերէնագիտութեամբն ձեռնարկած է հայացընելու Տիմոթէոսի գործը։ Եթէ ընդհանրապէս դժուարին է մեկնել հելլենաբանութեան հայ գրականութեան մէջ ընդհանրանալու պատճառն, գոնէ այսպէս մտածելու է առաջիկայիս համար. վասն զի հոս ոչ լեզուն պարզախօս եղած է եւ ոչ իմաստն դիւրահասկնալի. կէտեր, որոնք բուն շարժառիթն կը համարուէին յունաբանութեան ծագման։

Ենթադրութիւնը, թէ օտարաշուրթն մէկը եղած է թարգմանիչ, կը հաստատուի նաեւ այն պարագայէն, որ թարգմանիչն հմուտ չէ Ս. Գրոց հին թարգմանութեան։ Այս անհմտութիւնն եղած է պատճառ Ս. Գրոց վկայութեանց խժալուր հայերէնով նոր թարգմանութեան՝ հեռու բոլորովին նախնեաց ընտիր թարգմանութենէն։ Այսպէս օր. համար Եփես. բ. 20—21 համարներն (Հակաճ. 57, 11—14).

| Նոր թարգմ. | Հին թարգմ. |
|---|---|
| Շինեալք ի վերայ հիման առաքելոցն եւ մարգարէից | Շինեալք ի վերայ հիման առաքելոց եւ մարգարէից. |

1 Հմմտ. եւ Ցանկ. ԻԳ։

| | |
|---|---|
| ելոյ ծայր անկիւնւոյ ինքեան Յիսուսի Քրիստոսի, յորում ամենայն շինուած յաւգակապեալ աճէ ի բագին սուրբ Տէրամբ։ | որոյ է գլուխ անկեանն Քրիստոս Յիսուս, յորում ամենայն շինուածն յօդեալ եւ պատշաճեալ, աճէ ի տաճարսուրբ Տէրամբ |

Համարիլ սոսկ հիմն, ինչպէս Գ. Տէր Մկրտչեան[1] կ'առաջարկէ, Ս. Գրոց Նորաքեր՝ երրորդ թարգմանութիւն մը, գոնէ առաջինկայ գրութեանս համար դժուարին է, այնու որ մի եւ նոյն կոչումն այլ եւ այլ անգամներ թարգմանուած է միշտ պէսպիսութեամբ, եւ եթէ տեղիս տեղիս նոյնութիւն մ'ալ կը տեսնուի, յունարէնի ստրկաբար հետեւիլն յառաջ բերած է[2]։

Այս կամայականութեան հետեւած է թարգմանիչն նաեւ մի եւ նոյն հատուածի այլ եւ այլ կրկնութեանց[3] թարգմանութեան ժա-

---

1 ԱՐՐՏ, 580—586։

2 Հմմտ. Փիլիպ. Բ. 6—11 համարներն էջ 3, 48, 104, 214, 272, 312, կամ Ղուկ. Ա. 35... էջ 2, 73, 269. Եա. ԾԳ. 4—5, էջ 29, 275 եւն եւն։

3 Տիմոթէոս սովորութիւն ունի քանի մ'անգամ ի մէջ բերել մի եւ նոյն հատուածն այլ եւ այլ վարդապետական կէտեր ապացուցանելու համար։ Զանցառութիւն մը պէտք է նկատել հրատարակիչներու կողմանէ այս մասին անուշադրութիւնն ծանօթութեանց կամ «բաղդատականութեան» բաժնին մէջ։ Այսպիսի հատուածներու համեմատութեամբ կարելի էր շատ մ'անընթեռնլի տեղերն ուղղել, որ անհրաժեշտ ալ էր, քանի որ անմատչելի է դեռ յունարէն բնագիրն։ Զոր օր. էջ 73, 17. «կատարեալ.. անյեղլին նախահաւէ». ի ծան. «մի բառ անփերծանելին». սոյն կարելի էր վերծանել 30, 18 տողին օգնութեամբ, ուր նոյն հատուածին մէջ բառական կը թարգմանուի, «կատարեալն անք, անյեղլեղուկն նախահաւատն» եւն։

մանակ. այսպէս Տիմոթէոս Յուլիոս Քահանայա-պետի թղթէն հատուած մ՚ի մէջ բերած է 5 ան-գամ[1], թարգմանիչն ամէն անգամ անզգալա-բար նոր թարգմանած է, ասկէ պատկերած է մի եւ նոյն ժամանակ պայծառ կերպով թարգմանութեան առեն ընտրած քմահա-ճոյքն ալ[2]։

Լեզուի տեսակէտով մասնաւորապէս կ՚ար-ժէ ուսումնասիրել Տիմոթէոսի Հակաճառու-թեան հայերէնն, վասն զի իւր ինքնուրոյն տպովն զգալի տարբերութիւն ունի միւս ժամանակակից թարգմանութիւններէն, այսպէս Փիլոնի, Իրե-նէոսի, Աթանասի, Գր. Աստուածաբանի եւն գրուածոց թարգմանութիւններէն, որոնք թէեւ շատ կանուխ թարգմանուած չեն եւ հելլենա-բանութեան մէջ թաթխուած են, բայց շատ մեծ վիճով հեռու են Հակաճառութեան լեզուէն։ Մինչ հոն հայկաբանութիւնն կը տիրանայ միշտ

---

1 Հակաճառ. էջ 8–9, 132, 177, 186, 256–260։

2 Օր. համար էջ 8 և 260 եւն, գիջեալ = էջ 177, ստորանցեալ, 177, 260 եւն գրիցեալքն = 132, գրու-թիւնքն. էջ 8, 132 եւն բարեհամբաւել = 177, գովել. էջ 260, իշանել, 177, վայրանցութիւն, 132, վայրիջու-թիւն. էջ 30, պորփորկաւ = 73 փարագրաւղ. 30 ստո-րանկանի, 79 գնանի. 28, մշտնջենաւոր = 275, յաւետախաւ-ղաց. 28 իրր գիտել = 275 իրր մեր. 10, ընդ անուանն ա-ռեալ լինի = 187 պարառեցելոյ ընդ անուանն 10, ջարա-ռեցելոյ = 187, պարառեցելոյ. 18, բացընկեցիկ = 118, տարընկեցիկ եւն։ Այսպիսի տարբերութիւնք շատ յաճախ են։ Ուշադրութեան արժանի է հօս նաեւ քերականական նոր ձեւերն. օր. համար խարարին, խաւսից, նիջեւանի եւն, կամ դերանուանց փոգական ձեւն, աէ (42), նէ, ի նեմայ, փոխ. ի նմանէ (275) եւն։

հելլենաբանութեան, հօս ընդհակառակն հայերէնն սորուկն է յունաբանութեան: Կը յիշեցընէ մեզ ակամայ Դաւիթ Անյաղթի եւ քիչ մ'ալ Ստեփ. Իմաստասիրի թարգմանութիւնքն: Յայտնի է որ վերջնոյս անուամբ եղած թարգմանութիւնք լաւ ներկուած են յունաբանութեամբ[1], որուն պատճառն պէտք է համարիլ յատկապէս թարգմանութեան օգնական Դաւիթ կենարը, ոչ քաջ հայերէնագէտ մը: “Անյաղթի„ գրութիւնքն ալ ապահովապէս ոչ լաւ հայկաբանի մը վերագրելու է, ինչպէս Տիմոթէոսի Հակաճառութեան թարգմանութիւնն: Դաւթի եւ Տիմոթէոսի գրութեանց թարգմանութիւնք կը մատնանշեն մի եւ նոյն դպրոց եւ մի եւ նոյն շրջան[2], դպրոց մը որ հայացուցած է նաեւ Թրակացւոյ Քերականութիւնը:

11. Տիմոթէոսի գործն կը հայանար ժամանակ մը, երբ ազգն օր աւուր կը մխրճէր դաւանաբանական հարցերու մէջ. իրաց այս հանգամանքը նպաստեց մեծապէս Տիմոթեայ հեղինակութեան եւ գործոյն ծաւալման:

Հեղինակն Տիմոթէոս շնորհիւ սուրբ ազդեցութեան՝ առաջին օրէն իսկ ճանչցուեցաւ ի Հայս “երանելի„[3] եւ “ընդ ուղղափառ հովիւսն եւ ընդ մարտիրոսս„ դասուեցաւ Դիոսկորոսի

---

1 Ցաշեան Հ. Յ., Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք. Մասն Ա. Վիեննա, 1895 եջ 15–1:

2 “Անյաղթ„ի գրութիւնք [illegible] շատ վերջն չեն թարգմանուած. Հմմտ. Khostikian Missak, David der Philosoph, Bern, 1907, p. 15 ff.

3 Գիրք Թղթոց. 140:

Հեռ[1] եւ իւր գրութիւնքն Հաւատոյ իրաց ջատագովութեան համար յանձնարարուեցան իբրեւ ամենակարեւոր զէնք. «ունի քո աստուածսիրութիւնդ զամենապատուականին եւ զերանելի Հաւրն մերոյ Տիմոթէի զգիրս՝ որ ընդդէմ Քաղկեդոնի ժողովին»[2]: Անունն ծանօթացած էր արդէն Բաբգէնի օրով, երբ թարգմանուեցան ասորերէնէ Զենոնի եւ Անաստասայ թղթերն ու Պետրոսի եւ Ակակայ թղթակցութիւնք[3], ուր կը յանձնարարուէր Պետրոս Ծանրախօսէն մատուցանել «զպատարագն երանելոյն Տիմոթէոսի հաւատարիմ Հաւր մերում Հայրապետի Աղեքսանդրացւոյ» եւ անոր «երանելի եղբօր» Անտեղիս երիցու՝ «այն որ վկայեաց ի Գանդրա յաւուրս Լեւոնի արքայի»[4]: Այս յարգութիւնն վայելեց Տիմոթէոս երկար ժամանակ[5], բայց յընթացս, երբ աւելի մտերիմ եղաւ Հայոց յարաբերութիւնն Յունաց հետ, սկսաւ կորսնցնել իւր վարկն, տկարանալ Հայոց համարումն իր վրայ եւ վտարուիլ Նուիրականաց դասէն: Երուսաղէմայ Յովհ. Հայրապետն[6] արդէն Է. դարուն կը ներկայացընէր զՏիմոթէոս իբրեւ անսուրբ, հայհոյիչ, նոյնպէս Թ. դարուն Փոտ[7], եւ ԺԲ.

---

1 Թուղթ Վրթանիսի առ Սորմէն, Անդ, 94:

2 Թուղթ Պետրոսի, Անդ, 101: Նամակագիրն լաւ ծանօթ է Հակաճառութեան եւ ունի անկէ քաղուածներ:

3 Գիրք Թղթոց, 243—278:

4 Անդ, 260:

5 Համմտ. Գիրք Թղթոց, 329, 491:

6 ԱՐՐՏ. 1896, էջ 254:

7 Թուղթ առ Զաքարիա, էջ 181:

դարուն Գրիգոր Ցղայ[1] յայտնապէս Նզովից արժանի կը համարէր Հակառակ Յուտէորդւոյ եւ այլոց համոզման։ Է. դարու սկիզբներն (604—5) Սորմէն՝ Յունական Հայաստանի տարատեղատը կը գրէր Վրթանիսի. «Եթէ զԴիոսկորոսին ասէք, զՏիմոթէոսի զԱղեքսանդրացւոյ, որ ընդդէմ բարեպաշտութեան հոգեկիր հարցն յանդգնեցան ասել, ուստի եւ մերժեցան ի սրբոյ եկեղեցւոյ, եւ անչինչ վիճակեցան յիշատակի Նզովից, զայդ եւ մեք քաջ գիտեմք, եւ ունիմք ի կապիրճս հաւատոյ մերոյ ճշմարտի, որպէս [եւ] զսուտ եւ զաւտար եւ զանգործ Նեստ»[2]։ Սորմէնի այս տողերն կը ցուցընեն միանգամայն Տիմոթէոսի գրուածոց ստացած ճոխութիւնն թէ Միաբնեայց եւ թէ Քաղկեդոնականաց ձեռքը։ Իւր գրութիւնքն սակայն առաջին անգամ յանուանէ յիշուած կը գտնենք Վրթանիսի եւ Մովսէս Ցուրտաւայ եպիսկոպոսի Թղթակցութեանց մէջ Է. դարու առաջին տասնեակին[3]։

---

[1] Թուղթ առ Հիւսիս. Վրդ. էջ 75։ — «Պայծառանայր Ս. Սիմէոն Սիւնական յԱղեքսանդրեայ, այլ եւ Տիմոթէոս եւրեց ողջէր հաստատել իմաստասէրը» (var. իմաստասէր) կը գրէ Սամ. Անեցի յամի ՇԲ. (Հրտ. Տէր-Միքէլեանի, 72)։ Նաեւ Կիր. Գանձակեցի. «Պայծառանայր եկեղեցին Ս. Սիմէոնիւ սիւնակեցաւն յԱղեքսանդրիա. եւ Տիմոթէոս եւրեց ողջէր հաստատեալ եւ իմաստասէր, որ զամենայն փիլիսոփայից բարձրութեամբ զամենայն բանս աստուածայնոց արանց ընդդէմ ամենայն հերձուածողաց»։ Հրտ. Վենետ. էջ 21։

[2] Գիրք Թղթ. 91։

[3] Գիրք Թղթ. 113 եւն։ Հրատարակիչք (Յովհ. ԺԸ) կը նշմարեն հետքեր նաեւ Յովհ. Բ. (557—574) առ Աղուանս Թղթին մէջ. Անդ. էջ 81—84։

12. Հայք օգտուած են Տիմոթէոսէն մասնաւորապէս ամփոփուած գտնելով հոն Ս. Հարց եւ այլոց գրութիւններէն հատուածներ, որոնք այլուստ անմատչելի էին իրենց. այսպէս Յուլիոս Քահանայապետի, Յովհ. Երուսաղէմացւոյ եւն գրութիւնք։ Այնպէս որ եթէ փնտռենք Հակաճառութեան հետքերն հայ մատենագրութեան մէջ, ամենէն աւելի Ս. Հարց եւ այլոց գրուածներէն ի մէջ բերուած վկայութիւնք պիտի զարնեն աչքի, քան Տիմոթեայ սեպհական կարծիքները։

Հրատարակիչք մատենացոյց ըրած են արդէն[1] այսպիսի քանի մը հետքեր, "այս խնդրի մանրամասն ուսումնասիրութիւնը ուրիշ ժամանակի թողլով„ Սաթուսաղայի թղթի, Օձնեցւոյ "Ընդդէմ Երեւութականաց„, Ճառին, Խոսրովիկայ երկերու, Սահակայ Հայոց կաթողիկոսի„.[2]

---

1 Յառաջաբան. ԺԸ–ԻԱ։

2 Հրատարակիչք (Յառաջաբ. Ի.) թղթոյս մասին կը գրեն. "Եթէ գրուածքի վերնագիրն ուղիղ է եւ Սահակ կաթողիկոսն է հեղինակը, միայն Սահակ Գ. Ձորափորեցին կարող է ըլլալ„ (Է դարու վերջերը, 678ին). Հմմտ. այս մասին նաեւ Die Armenische Kirche. p. 136, եւ Des hl. Irenäus, Erweis der apostolischen Verkündigung, herausgegeben von K. Ter-Mekerttschian und E. Ter-Minassiantz, Leipzig 1907, p. V. Ըստ մեզ այսչափ կանուխ դարու նկարագիրն չի կրեր գրութիւնս վրան. "Ասացեալ սրբոյ վարդապետին Սահակայ Հայոց կաթուղիկոսի եւ մեծի թարգմանչին„ խորագիրն յայտնապէս կեղծիք մ'է, եւ ուզուած է վերագրել այսու Մեծին Սահակայ. ոչինչ կապ ունի հետեւաբար Ձորափորեցի համանուն կաթողիկոսին հետ։ Գրուածքս յօրինուած է Յունաց դէմ, մերձաւորապէս Ժ–ԺԱ. դարուց մէջ, ժամանակ մը, երբ կը կցկցուէր Յոյներէն ալ

թղթին եւն մէջ․ որուն վրայ աւելցուց Գ․ Տէր-Մկրտչեան Ստեփ․ իմաստասիրի եւ կայսերաց գրոց մէջ նշմարուած հետքերը[1]։

Մաթուսաղայի թղթին մէջ բաց ի Գր․ Սքանչելագործի վկայութենէն[2] կարելի է մասնացոյց ընել եւ հետեւեալները․

Տիմ․ 78.

Ի․ Գլուխ ի Թղթոյն Ղեոնեայ․ Քանզի ներգործէ երկաքանչիւր կերպ ընդ միւսումն հաղորդութեամբ, որպէս յատուկ ընկալաւ, զի բանին գործաւղի զայս, որպէս է Բանին, իսկ մարմնոյ կատարչի, որպէս մարմնոյն․ քանզի ոմն նոցա բացափայլէ սքանչելագործութեամբք, իսկ ոմն ընդ թշնամանաւք ստորանկեաց։

Իշ 64․ Երկրորդ գլուխ ի Թղթոյն Ղեոնեայ․ Նմա-

Մաթուս․ 90.

Արդ եթէ ըստ նոցա բանից այլ ոմն Քրիստոս Յիսուս է, եւ այլ ոմն Բանն Աստուած, եւ ոմն ի նոցանէ զախտ եւ զչարչարանս կրէ՝ ծնեալ ի Կուսէն, եւ ոմն ի նոցանէ պայծառանայր նշանօք եւ արուեստիւք, որ է Բանն Աստուած, հեռացուցանելով զնա ի տնօրէնութեան խորհրդոյն, որպէս կայ ի տոմարին Լեւոնի։

Իշ 93․ Բայց զի ի Քաղկեդոնի ժողովին պատճա-

---

նման բան մը ընդդէմ Հայոց․ "Սահակայ Հայոց Կաթողիկոսի բան թշնամական ընդդէմ Հայոց„ (Τοῦ ἁγίου πατρὸς ἡμῶν Ἰσαὰκ τοῦ καθολικοῦ τῆς μεγάλης Ἀρμενίας Λόγος στηλιτευτικος κατὰ Ἀρμενίας. Migne, P. gr. 132, 1155 —1238)։ Մտադրութեամբ ընթեռնլով Հայերէնն կը տեսնուին բաւական թուով բառական փոփոխութիւններ Ստեփ. Սիւնեցւոյ († 736) առ Գերմանոս, Սահակայ առ Փոտ խաչկայ († 991) առ Մետրապոլիտն Մելիտինոյ թղթերէն։

1 ԱՐՐՏ․ 265—67, տես վերը էջ 16։

2 Հակաճառ․ 20, 25–30․ Մաթուս․ առ Օրպէլ․ 90 (Հրտ․ Էջմնի)։

ցելոյ պատուհասեւ յաստ-կութեանն երկաքանչիւրոյ բնութեանն, ...

ռանօք բաժանման զերկուս բնութիւնս ասացին այս-պէս. Ապրեցելոյ երկաքան-չիւրոյ բնութեանն իւրոյ յատկութիւն, ոչ ընկալան զնա ոմանք ի ձերոց ճար-տարացդ առաջնորդք Աղե-քսանդրացւոց, այլ եւ յայ-տարարութեամբ ընդդիմա-դրութիւնս բազում արա-րին։

Մ'աթուսաղայ հոս ոչ միայն կ'օգտուի բաւացի, այլ եւ կը նշանակէ աղբիւրն վերջին տողերուն մէջ։ Երկու հատուածներուս մէջ ալ խնդիրն Լեւոնի Տոմարի մասին է, այս կէտն ուշադրութեան արժանի է մասնաւորապէս։ Հայք Լեւոնի Տոմարին եւ առ հասարակ Քաղկեդոնի ժողովոյն իրաց մասին տեղեկութիւններն հոս ամփոփուած ունէին գլխաւորաբար։ Այնպէս որ Վրթանէս Քերդող Մովսէս եպիսկոպոսին, երբ սա իրմէ տեղեկութիւն խնդրած էր սոյն ժողովոյն եւ Լեւոնի Տոմարի նկատմամբ, կը յանձնարարէր կարդալ իբրեւ կարեւորագոյն մատեան ի միջի այլոց "զգիրս Տիմոթէոսի Աղեքսանդրացւոյ"[1]։ Ինքն իսկ Վրթանէս թէ իւր Թղթոց մէջ ի Գիրս Թղթոց եւ թէ իւր Կայսերաց գրոց մէջ[2] Լեւոնի եւ Քաղկեդոնի ժո-

---

1 Գիրք Թղթ. 126։

2 Հրտ. "Անանուն ժամանակագրութիւն խմբագիր յօրինեալ ԺԷ. դարու ի հնագոյն ժամանակագրաց", Վենետ. 1904։ Հ. Սարգիսեան եւ այլք հեղինակ նկատած են գրութեանս Անանիա Շիրակացի. գործը սակայն ելած է Նախ-

ղովոյն վարդապետութիւնն բացատրելու ժամանակ օգտուած է յայտնապէս Հակաճառութենէն. օր. համար "Թուղթ շրջաբերական Մովսիսի եպիսկոպոսի„ խորագրեալ թղթին մէջ, որ Վրթանիսի ձեռքէն ելած է, կը կարդանք.

Գիրք. Թղթ. 116.

Այսպէս զասելն, թէ Ես եւ Հայր իմ մի եմք. եւ ի վերայ ծովուն զգնալն, զփորձչին զյաղթելն, զխեղան ողջացուցանելն, զքաղցեալսն կերակրելն, զչորեքօրեայ զմեռեալն յարուցանելն, եւ որ ինչ նման է դորին, միայնոյ եւ մերկի Աստուածային բնութեանն առանձին զատուցանեն։ Իսկ ասելն, թէ Հայր իմ մեծ է քան զիս, եւ զվաստակելն, եւ զննջելն, զքաղցնուլն, եւ զծարաւելն եւ զահագին զչարչարանսն, եւ զկամաւոր մահն, մարդկային բնութեանս միայնոյ առանձին որոշեն, եւ իբրեւ որդի մարդոյ, զամենայն տկարութեամբ կրել վարկանին Բանին զնա վարելով յայն։

Տիմ. 93. 99.

Ը. գլուխ ի Թղթոյն Ղեւոնեայ։ Քանզի քաղցնուլն եւ ծարաւել եւ վաստակելն եւ ննջել խոստովանաբար է մարդոյ. այլ հինգ հացիւքն հինգ հազարս մարդկան յագեցուցանել եւ շնորհել Սամարուհեայն կենդանի ջուր... եւ ի վերայ մկանանց ծովու ճեմել ... աներկբայապէս է Աստուծոյ:

Թ. գլուխ ի Թղթոյն Ղեւոնի. Քանզի որպէս զի զյոլովս թողից, ոչ նորին է բնութեան լալն ի գորովոյ գթոյ զվախճանեալ սիրելին եւ զնոյն վերակեցել հանդերձեալ սփռեցելոյ հողոյն քառաւրեին ահա թաղման արտաքս յառնել առ հրաման ձայ-

---

Նախար Վրթանէս Քերթողէն, Է. դարու առաջին քառորդին Սարիշ անդ․ոյ թողլով առ այս իմ փաստերս, մատնացոյց կ'ընեմ հոս պարզապէս գրոցս Հակաճառութեան հետ ունեցած աղերսն. էջ 61—63 = Տիմ. 35-36. էջ 65-66 = Տիմ. 35—7, 146—151։ Հմմտ. եւ ԱՐՐՏ, 1908, էջ 265-66։

ՙնին. կամ զփայտէ յաւիլ. եւ ի տուընջենէ ի գիշեր փոխիլ զտառս ամենայն. տառանակցել կամ սեւե-ռանալ բեւեռաւքն. եւ զգրատուին զգրուենս բանալ հաւատով աւազակին այս-պէս ոչ նորին է ընու-թեան տեղն. Ես եւ Հայր մի եմք. եւ տեղն. Հայրն իմ մեծագոյն իմ է:

Որթանէս Տոմարին խօսքերն աւելի պար-զած ի մէջ կը բերէ, քան բառական կ'օրինակէ։ Նման հատուած մը Տոմարէն ունի նաեւ Աբրա-համ Կաթ. իւր թղթերուն մէջ[1]։

13. Նախնիք ոչ միայն օգտուած են հակա-ճառութիւնէն, այլ եւ ի մի ամփոփելով հոն գրը-նուած Լեւոնի Տոմարէն հատուածներն ջանացած են կազմել "Լեւոնի Տոմարն[2]„. այսպէս կը գրուի այս մասին "Սկզբնագիրք Տոմարի Ս. Լեւոնի եւ Սահմանի Ս. Ժողովոյն Քաղկեդոնի„ գրուածքին մէջ[3].

"Աստի սկսանի հատուածական թարգմա-նութիւն ինչ տոմարին Մեծին Լեւոնի գտեալ ի ձեռագիրս ինչ Հայոց, եւ ի կիր արկեալ յոմանց հակաճառից՝ որ յայտնապէս է թարգմանեալ ի

1 Գիրք Թղթ. 172 = Տիմ. 74. էջ 193 — Տիմ. 93, 99։

2 Ձեռագիր մը Պարիսի Ազգ. Մատենադարանին մէջ (Թ. 130) կը նշանակէ F. Macler: Catalogue des Ms. Arméniens et Géorgiens de la bibliothèque nationale. Paris, 1908, p. 71.

3 Հրատ. Վենետ. 1805, էջ 17, ծն. 1։

յունականէ (Թէպէտ եւ ժամանակն անյայտ), բայց կարի բառական, միանգամայն եւ տխմարական ոճով. որով ուրեք ուրեք անհեթեթ իմացուածս ընծայեցուցանէ՝ մանաւանդ որոց խընդիրնն պատճառանս ընդդէմ ողջմտութեան սրբոյն Լեւոնի: Խորագիր գործոյն է այսպիսի. «Գլուխք չորեքտասանք, զոր գրեաց երանելին Ղեւոնդիոս հայրապետ Հռովմայ առ Փլաբիանոս արքեպիսկոպոսն Կոստանդնուպոլսոյ. զոր ընկալաւ տիեզերական սուրբ ժողովն Քաղկեդոնի, ՈԼԶ հայրապետքն»:

Համեմատութիւնը կը ցուցընէ թէ հոս ուրիշ բան չէ յառաջ բերուածն, բայց եթէ Հակաճառութեան մէջ Լեւոնի Տոմարէն առնուած հատուածներն՝ բառ առ բառ [1]: Ամփոփողն, որչափ կ'երեւայ, Քաղկեդոնական մ'եղած է: Այս կէտն կը պարզէ մեզի, թէ չենք ունեցած երբեք Լեւոնի Տոմարին ամբողջական հին թարգմանութիւն, ինչպէս կ'ենթադրուէր ցայժմ: Հայք ոչ միայն Լեւոնի Տոմարն կամ Քաղկեդոնի ժողովոյն Սահմանն չունէին հայերէն թարգմանութեամբ, այլ եւ ոչ այս մասին հայող որ եւ իցէ գիրք: Վիճմանց ժամանակ հակառակ կողման վարդապետութիւնն աչաց առջեւ ունէին մի միայն Տիմոթեայ Հակաճառութեան մէջ. այս իսկ պատճառաւ երբեք ճշգրիտ ծանօթութիւն չեն կազմած այնչափ անգամ նզովուած Քաղկեդոնի ժողովոյն պատմութեան եւ վարդապետութեան մասին: Ջուր անցաւ Վրաց Կիւրիոն

1 Հմմտ. էջ 11 = Տիմ. 53. էջ 13 = Տիմ. 64 ե. ն.:

կաթողիկոսի ջանքն առ այս, որ Նոր (վրացերէ՞ն) թարգմանութեամբ բերել տալով ժողովոյն Սահմանն Երուսաղէմէն, իրն իրականութեան մէջ աշխատեցաւ պարզել Աբրահամու առջեւ[1]։

14. Այսպիսի զէնքով կռուած են Հայք նաեւ Թէոդ. Մոպսուեստացւոյ, Նեստորի եւ այլոց դէմ։ Մասնաւորապէս յիշելու արժանի է հոս այս տեսակէտով Նեստորի գրութիւնքն, որոնց Հայք ծանօթ կ'երեւան իրենց գրուածոց մէջ, եւ կարծել կու տան, թէ երբեմն ունեցած ըլլանք Նեստորի գրութիւնքն հայերէն։ Ցիրաւի Ե. դարուն լսուեցաւ թէ թարգմանուեցան Նեստորի եւ անոր վարպետին Թ. Մոպսուեստացւոյ գրութիւնք, բայց շուտով վերցուեցան հետակորոյս՝ շնորհիւ Սահակայ եւ Մաշտոցի արթնութեան[2]։ Հայ հեղինակաց քով նշմարուած կոչմունք Նեստորի եւ այլ հերձուածողաց գրուածներէն առնուած են նոյնպէս ուղղակի Հակաճառութենէն։ Նշանաւոր է այս կողմանէ Սահակայ Վարդապետի առ Փոտ գրած պատասխանական թուղթը[3], ուր կը կարդանք (էջ 284—5).

"Բայց զոր միաւորեալ ասացին եւ այնու զպարզամիտսն հրապուրելով ի բաց լինել ինքեանց ի Նեստորական աւանդիցն, զոր եւ առընթեր բանիս կարգեսցուք զսահմանս երկաքանչիւր դաւանութեանցն, զՆեստորին ասեմ եւ

---

1 Գիրք Թղթոց. 186–188։

2 Գիրք Թղթ. 7–8, 10։

3 Գիրք Թղթ. 273–294։

զՔաղկեդոնին հանդերձ Լեւոնական տումարիւն, յորոյ վերայ կառոյցն իսկ ժողովն Քաղկեդոնի զսահմանս աւտարոտիս եւ խորթաբարոյ իւրոյ խոստովանութեանն։

| *Գիրք Թղթոց:* | *Հակաճառ:* |
| --- | --- |
| 1. Գրէ Նեստոր յիւրում գլխաւորագոյն Տրամաբանութեան հաւատոյն բանի այսպէս. Ես անփոփոխելի եւ անայլայլելի բանին Աստուծոյ երկուս բնութիւնս խոստովանիմ Աստուած ճշմարիտ յԱստուծոյ ճշմարտէ, եւ մարդ կատարեալ ի զաւակէ Դաւթի եւ Աբրահամու։ | |
| 2. Գրէ Լեւոն յիւրում Տումարին. *Աստուած* խոստովանիմ *ըստ այնմ, ըստ որում ի սկզբանէ էր Բանն, եւ Բանն էր առ Աստուած, եւ Աստուած էր Բանն.* եւ *մարդ* խոստովանիմ *ըստ այնմ ըստ որում Մարմին եղեւ եւ տաղաւարեաց ի մեզ:* | Էջ 84։ Եւ Աստուած ահա *ըստ այսմ, ըստ որում ի սկզբանէ էր Բանն. եւ Բանն էր առ Աստուած, եւ Աստուած էր Բանն.* իսկ *մարդ ըստ այսմ, ըստ որում Բանն մարմին եղեւ եւ տաղաւարեաց ի մեզ:* |
| 3. Գրէ Նեստոր. Ոչ Բանն Աստուած հանդերձեցաւ պատանաւք ի Յովսեփայ, այլ մարմինն ի Յովսէփայ։ | |
| 4. Գրէ Լեւոն. Մինն *փայլէր* նշանա*գործութեամբն*, եւ միւսն ընդ չարչարանաւքն *ստորանկեալ:* | Էջ 78։ Ոմն բացա*փայլէ* սքանչելա*գործութեամբք*, իսկ ոմն *ընդ* թշնամանաւք *ստորանկեաց:* |

| | |
|---|---|
| 5. **Գրէ Նեստոր.** *Բանն մարմին եղեւ եւ տաղաւարեաց ի մեզ:* | **Էջ** 54: *Բանն մարմին եղեւ եւ տաղաւարեաց նը մեզ:* |
| 6. **Գրէ Լեւոն.** *իմաստուն շինողին իւր տուն. զի Բանն մարմին եղեւ եւ տաղաւարեաց ի մեզ:* | **Էջ** 53: **Եւ** *իմաստութեամն շինաւղին իւր տուն. Բանն մարմին եղեւ եւ տաղաւարեաց ի մեզ:* |
| 7. **Գրէ Նեստոր.** *Զերկակսըն առ Քրիստոս որոշեմ բնութիւն, զի կրկնակ ահա բնութեամբ, իսկ արժանաւորութեամբ մի:* | **Էջ** 65. *Զերկակս առ Քրիստոս որոշեմ բնութիւնս.* **քանզի** *կրկնակք ահա բնութեամբ. իսկ արժանաւորութեամբ միականք:* |
| 8. **Գրէ Լեւոն.** *Քաղցնուլն եւ ծարաւելն, վաստակելն, ննջելն, խոստովանաքար է* **մարդոյ**, *այլ ի հինգ հացէ զե. հազարսն յագեցուցանել, եւ Սամարուհւոյն զկենդանական ջուրն շնորհել, եւ ի վերայ մկանանց ծովուն ճեմելն,* **եւ զկոհակս այտմանց ծովուն վերասաստելով մրրկին խաղաղացուցանել**, *աներկբայապէս է Աստուծոյ:* | **Էջ** 93. *Քաղցնուլն եւ ծարաւել եւ վաստակելն եւ ննջել խոստովանաքար է մարդոյ. այլ ե. հացիւքն* **հինգ** *հազարս* **մարդկան** *յագեցուցանել եւ շնորհել Սամարուհեայն կենդանի ջուր, . . եւ ի վերայ մկանանց ծովու ճեմել... աներկբայապէս է Աստուծոյ:* |

Հատուածներէս 2, 4—8 առնուած են փոքր փոփոխութեամբ *Հակաճառութենէն*. կը մնան անծանօթ երկուքը, 1, 3: Dr. W. Lüdtke մօտերս յօդուած մը նուիրելով Սահակայ ի մէջ բերած Նեստորի 4 վկայութեանց[1], ուշադրաւ կը տեսնէ առաջին տեղին, ուր Նեստորի գրոց անունն ալ դրուած է, անծանօթ ցայժմ այլուստ: Ի՞նչ աղբերէ գիտէ Սահակ այս երկուքը, որոնք

1 Lüdtke W., Armenische Nestoriana, ի Zeitschrift für Kirchengeschichte, *29*. Bd. (1908), S. 385—387.

իր քով միայն կը պատահին[1]։ Այն պարագան որ Լեւոնի խօսքերն եւ Նեստորի վերջին երկուքը բառացի վերցուած են Հակաճառութենէն, կարծել կու տայ թէ նաեւ այս առաջին երկուքն (1, 3) ալ Հակաճառութենէն առնուած ըլլան, եւ այն՝ կորուսեալ մասէն, վասն զի այժմեան օրինակին մէջ բացակայ են։

Նման տեղիք կարելի է մատնանիշ ընել նաեւ Գագկայ առ Ռոմանոս[2] եւ Խաչիկ կաթողիկոսի առ Մետրապոլիտն Մելիտինոյ[3] Թղթերու մէջ, զորոնք զանց ընելով հոս՝ կը յիշենք միայն «Սահակայ Հայոց կաթողիկոսի» Ընդդիմախօսութիւնն առ Յոյնս, ուր (էջ 470—81) բառական 12 կոչում ի մէջ բերուած է Հակաճառութենէն «յանուն Պաւղոսի Սամուստացւոյ, Ղեւոնի Հռովմայեցւոյ, Թէոդորիոսի Կիւրացւոյ, Նեստորի, Թէոդորիտոսի»։

15. Ունինք գրուածք մը «Երանելի Մեծի քերթողահօրն Մովսէսի Խորենացի եպիսկոպոսի» խորագրեալ, զոր առաջին անգամ հրատարակեց իբրեւ պատմահօր հարազատ ճառ մը Ա. Տէր-Միքէլեան[4] եւ ապա լոյս տեսաւ նաեւ Թղթոց գրքին մէջ՝ զետեղուած Ե. եւ Զ. դարուց Թըղթերու մէջ տեղն[5]։ Գրութիւնն սակայն թէ բովանդակութեամբն եւ թէ լեզուովն անարժան էր տեղւոյն. Նկատելով երկու կէտերս՝

---

1 Երկրորդ (3) հատուածն կ'երեւայ թէ կը համապատասխանէ Loofs, Nestoriana p. 266, 11—12 տողին։

2 Գիրք Թղթ. 795—301։ — 3 Անդ. 302—322։

4 Սամ. Անեցի, Վաղարշապատ 1893, էջ 255—261։

5 Գիրք Թղթ. 22—28։

գրած էինք այլուր թէ “յետին դարուց տիպն կ'երեւցընէ վրան[1]„: Առ այս կու տայ այսօր նոր ապացոյց մ'ալ Հակաճառութիւնս. յիշեալ Մովսէս Քերթողահայրն ծանօթ է հայերէն Հակաճառութեան. ուսկից բաց ի ընդհանուր գաղափարներ սորվելէ՝ ծանօթացած է նաեւ վերագոյն ի մէջ բերուած Երեքթեայ եպիսկոպոսի անուան եւ ճառին, զոր կը յիշէ փոքր ինչ աղաւաղութեամբ. “Եւ Երեքթեայ երանելոյ Անտիոք Պիսիդեայ եպիսկոպոսի, եւ յԱստուածայայտնութիւնսն ի կոստանդինոյպաւլիս„ (էջ 26): Այս ակնարկութիւնն բաւական է ճառն եւ հեղինակն ի միասին Զ. դարու կէսէն աստին քարշելու:

16. Հակաճառութեան ազդեցութիւնն հայ մատենագրաց վրայ եղաւ նաեւ լեզուի տեսակէտով: ընթերցողներն ի սկզբան զգուշութիւն ցոյց կու տային լեզուի խոշորութեան հանդէպ, այսպէս Վրթանէս Քերդող, եւ օգտուած ժամանակ վկայութիւնքն հարթուած ի մէջ կը բերուէին. բայց այսպէս չեղաւ յետիններու ընթացքը. յաճախ ընթերցումը եւ համալեզու թարգմանութեանց օր աւուր բազմանալն ընտելացուց հայ վարդապետներն խոշորութեան, որ յերեւան կ'ելլէ մանաւանդ Ը. դարու մատենագրաց քով, ինչպիսիններ են Թէոդ. Քռթենաւոր, Օձնեցի, Խոսրովիկ եւն, որոնք յաճախ օրինակութիւն ալ կ'ընեն իրենց գրուածոց մէջ Տիմոթէոսէն. Հրատարակիչք[2] առած են համեմա-

---

[1] Հանդ. Ամս. 1907, էջ 373:

[2] Յառաջաբ. ԺԹ.:

տութեան այսպիսի հատուած մը Օձնեցիէն[1] եւ Խոսրովիկէն[2], կարելի էր դեռ նշանակել նմաններ ալ մանաւորապէս Օձնեցւոյ եւ Խոսրովկի գրութեանց մէջէն, ուր յաճախ ակնարկութիւն ալ կ'ըլլայ սոյն գրոցս[3]:

Աւելորդ է աւելի երկարել խօսքը Հակաճառութեան թողուցած ազդեցութեան վրայ, որ ամէն մասամբ եղած է նշանակալից հայ մատենագրութեան համար: Հարկ է սակայն խոստովանիլ ի վերջոյ նաեւ, թէ առանց հրատարակութեան այս գրոցս՝ շատ անտեղի ենթադրութեանց պիտի դիմէր քննադատն ինչ ինչ մատենագրական հարցերու մէջ, եւ թիւ մը խնդրոց ալ պիտի մնար անլուծանելի: Այսպէս օր. համար Հ. Զարբ. "Մատենադարան"ի մէջ (էջ 617) կազմած է համոզումն թէ թարգմանած են նախնիք Յուլիոս Քահանայապետի առ Դիոնեսիոս թուղթն, պատահելով ինչ ինչ քաղուածքներու Հակաճառութենէն Հայ Ձեռագրաց մէջ եւն:

Գործը, ինչպէս կանխեցինք ըսել, շատ կարեւոր էջ պիտի բանայ հայ աստուածաբանութեան պատմութեան մէջ:

17. Բաց ի տոհմային գրականութեան համար ունեցած մեծ նշանակութենէն, անպայ-

---

1 Տիմ. 119, 24–28 = Օձն. 51: Առ այս հմմտ. Հանդ. Ամս. 1904, էջ 266, ծն. 4:

2 Տիմ. 261, 28—34 = Խոսր. 179:

3 Հմմտ. Հանդ. Ամս. անդ, 267. "Ճարտարք Յունաց" կը յորջորջուին Տիմոթէոսէն ի վկայութիւն կոչուած Ս. Հարք:

մասն յարգ ունի նաեւ հայրախօսական ուսման համար։ Տիմոթէոս իւր խօսքերն ճոխացընել աշխատած է Ս. Հարց վկայութիւններով, զորոնք մեծաւ մասամբ անձամբ հանած է բառացի բնագիրներէն՝ նշանակելով յաճախ աղբիւրն տիտղոսով եւ գլխով։ Մեծապէս նշանակալից է այս հանգամանքը. վասն զի այսօր շատ գրուածք անյայտացուցած է ժամանակն մեզմէ. գրուածներ, որոնց հետքն սակայն շնորհիւ Տիմոթէոսի մնացած է Հակաճառութեան մէջ։ Այս հետքերու օգնութեամբ հնարաւոր կ'ըլլայ ինչինչ գրուածոց հեղինակի եւ ժամանակի նկատմամբ երկբայութիւնք պարզել եւ անանուն գրութիւններն ստուգել։

Հրատարակիչք անհուն շնորհակալութեան պիտի արժանանային, եթէ իրենց հրատարակութեան մէջ յաջողէին նաեւ մէն մի վկայութեան աղբիւրն մատնացոյց ընել, ինչպէս ըրած են Ս. Գրոց տեղիքը։ Պահանջք մը, որ իւր անհրաժեշտութեան համեմատ կապուած է նաեւ մեծամեծ դժուարութեանց, զորոնք հրատարակութիւնն պատրաստուած միջավայրին մէջ հարթել ի հարկէ անհնարին էր։

Վկայութեանց մէկ մասն կարելի էր գտնել յայտնի Հարց գրուածոց մէջ[1] եւ փոքր մաս մ'ալ նման ծաղկաքաղներու մէջ, ինչպիսիններ բաւական յաճախաթիւ են յոյն եւ ասորի գրականութեան մէջ։ Վերը Migneէն ի

1 Ա. Migneի, Patrologiae cursus, Series Graeca, Paris. 1857—60.

մէջ բերինք Երեքթեայ հատուածն. հոս մասնաւորապէս կրնանք յիշատակել Նեստորի գրուածներէն առնուած հատուածները։

18. Նեստորի գրութիւնք այսօր հատակոտորներով միայն ծանօթ են, որոնք մնացած են յոյն, լատին եւ ասորի գրականութեան մէջ։ Մեծաթիւ կոչմունք պահուած են նաեւ Տիմոթէոսի գրուածոց յատկապէս Հակաճառութեան մէջ։ Անուանի գիտնական Fr. Loofsի արդիւնքն եղած է ի մի ամփոփել վայրավատին ցիր եւ ցան հատուածներն, գիտնական յօրինուածութեամբ դասաւորել եւ հրատարակել յոյն, լատին եւ ասորի գրականութեան մէջէն[1]։ Հեղինակին անծանօթ մնացած է Տիմոթէոսի հայերէն Հակաճառութիւնն, թէեւ իրեն ուշադրութենէն չէ վրիպած Բրիտ. Միւսէոնի 12156 Ձեռագիրն, որ "Տիմոթէոսի Եպիսկոպոսի Աղեքսանդրեայ ընդդէմ ժողովոյն Քաղկեդոնի" գրուածքն կը բովանդակէ։ Գրութիւնս, զոր վերագոյն առիթ եղած էր յիշատակել, ծանօթ էր մեզ միայն Հրատարակիչներու յառաջաբանէն, Wrightի Ցուցակն մեզի անմատչելի մնալուն, այս իսկ պատճառաւ շատ համառօտ ծանօթութիւն ունէինք բովանդակութեան մասին։ Ընդարձակ տեղեկութիւն կու տայ այս նկատմամբ մեզի Dr. W. Lüdtke 9 Հոկտ. թղթով, ուսկից կը տեսնուի թէ Բրիտ. Ձեռա-

1 Տես Fr. Loofs, Die Ueberlieferung und Anordnung der Fragmente des Nestorius. Halle, 1904, 8° 407 S.

գրին մէջ Տիմոթէոսի բոլորովին անկախ մէկ գործն հասած է մեզի (հմմտ. եւ վերը, էջ 17), այս կը հաստատուի նաեւ Loofsի յառաջբերութիւններէն։ Բրիտանիական Ձեռագրին մէջ կը պակսին շատ մը Նեստորի կոչումներ, որոնք կան Հակաճառութեան մէջ. եւ թիւ մ'ալ հատուածներու առաւել կամ նուազ ընդարձակութեամբ են։

Համեմատելով Հակաճառութեան մէջ ամփոփուած Նեստորի հատուածներն Loofsի քաղուածքներուն հետ, գտանք գեղեցիկ նորութիւններ Հակաճառութեան մէջ, որոնցմով կարելի կ'ըլլայ լուծել կարգ մը երկբայութեանց Նեստորի գրուածոց մասին։ Այս նկատմամբ յուսանք թէ այլուր առիթ կ'ըլլայ խօսելու։

19. Այստեղ նշանակենք միայն որ Nestorianaի մէջ ամփոփուած յոյն բնագրին հետ համեմատութիւնն պարզեց հայերէն թարգմանութեան մէջ ինչ ինչ խնդիրներ եւ այլուստ անծանօթ բառերու նշանակութիւնք։ Առաջինն հետեւեալ նախադասութեան մէջ (էջ 94) է. “Եւ զի զայս հաւաստագոյնս եւ ամենեցուն դիւրընկալս ասացից՝ զԱրիոսի, Եւնոմեայ եւ զամենեցուն պարուցն այսպիսեացս տոմ (?) փականաց փոյթ Աստուածածին ներածել„։ Գալուստ Տէր-Մկրտչեան (ԱՐՐՏ. 580) շղագրեալ բառն կ'առաջարկէ ընթեռնուլ “մոմ փականաց„, իբրեւ կնիք, ենթադրելով մ եւ տ նշանագրոց շփոթութիւն։ Յունարէն բնագիրն սակայն ուրիշ լուծում կու տայ. բնագիրն է

(Loofs, 273) *ἵνα δὲ αὐτὸ σαφέστερον καὶ πᾶσιν εὐληπτότερον εἴπω· τοῖς Ἀρείου καὶ Εὐνομίου καὶ Ἀπολιναρίου καὶ πάντων τοῖς χοροῖς τῶν τῆς τοιαύτης φ ρ α τ ρ ί α ς σπουδὴ τὸ θεοτόκος εἰσάγειν.* Տոմ փականաց կրկին բառերու համապատասխանն է հոս φρατρία, որուն իմաստն է «ցեղով կամ տոհմով ազգակից ժողովրդական ընկերութիւն, տոհմակիցք, ցեղակիցք, ազգատոհմ»: Հետեւաբար φρατρία թարգմանուած է տոմ·փականաց (արմատն տոմփ առանձինն հմմտ. էջ 283), այս է Տոհմականաց, որ յաճախ նաեւ ազգական, տոհմակից իմաստով կը գործածուի. հատուածին իմաստն է ուրեմն. Եւ որպէս զի դիւրահասկնալի ընեմ պարուց Արիոսի, Եւնոմիոսի եւ բոլոր այսպիսեաց ցեղակիցներու (համախոհներու): — Էջ 108. «Իսկ եթ՚ ոչ Տէր, մի՛ դու սոսկ մարդ առնելով զՔրիստոս, ինձ առասաղապեր զնախատինս»: յոյնն ունի հոս *μὴ σύ... ἐμοὶ π ρ ό σ τ ρ ι β ε τὸν ὀνειδισμόν* (Loofs, 357). բայն *προστρίβω* կը նշանակէ «յոք (յանցանս եւն) կրթել, նախատինս դնել ումեք, ձգել մէկուն վրայ», ըստ այսմ առասաղապել ստրկական նմանութիւն մ՚է յունարէնի: — Էջ 116. «Զի յորժամ ի խոնարհ (?) մատչելով լուիցես մահ, մի՛ պարմասցիս, զի զխաչեցեալն եւ զթաղեալն մի՛ ջնեսցէ զլսարանդ, իբր աստուածութեանն զայս կրեցելոյ»: Ի խոնարհ մատչելով կը համապատասխանէ յուն. *ὑπο-καταβαίνων* (Loofs, 295) «(ի խոնարհ) իջանել,

herabsteigen„ բային, որ էջ 152 նոյն պարբերութեան մէջ թարգմանուած է “ի վայր իջանելով„: Աւելի հետաքրքրական է ջնեսցէ (էջ 152 ջնիցէ) բայն, որուն համապատասխանն է յուն. μὴ πλήττῃ τὴν ἀκοὴν... բայն πλήττω կը նշանակէ “հարկանել, բաղխել„, այս իմաստով է անշուշտ նաեւ էջ 275 “ի ջնմանց„ բառն, իբր “հարուած„, որ այլուր նոյն պարբերութեան մէջ (էջ 29) “ի վիրացն„ փոխուած է: — Էջ 122. “Երկրպագեմ ընդ աստուածութեանն զսա, իբր աստուածայնոյ ասակից ծնութեան„. յոյնն ...ὡς τῆς θείας συνήγορον αὐθεντίας (Loofs, 260). συνήγορος կը նշանակէ “խօսակից, mitsprechend„, լայնագոյն իմաստով՝ “ջատագով, փաստաբան„. վերջին առումով կը թուի այլուր (էջ 163) նոյն հատուածին մէջ թարգմանուած “խաւսնակ„: — Եւ էջ 128. “Իսկ աջոյն օգնելոյ Աստուածն բան ոչ պիտայր արիէ„ (?): Իմա ըստ յուն. (Loofs, 268) οὔχ ἔχρῃζεν, Ἄρειε = Ոչ կարօտէր, Արիէ: — Էջ 100. “Ոչ Աստուածութիւնն, յէ հերձուածող„, յուն. պարզապէս οὐ θεότης, αἱρετικέ (Loofs, 235): — Էջ 109. “Զի զծնելութիւնն զ'ի յերանելւոյն կուսէ Որդւոյ այս (?) կոչեսցես„. Հրատարակիչք իրաւամբ դրած են հարցական. յոյնն լոկ. υἱοῦ μὲν καλῇς (Loofs, 274):

Այսչափ Նեստորի հատուածներու մասին: Ծրագրէս դուրս է մտնել նման ուրիշ համեմատութեանց մէջ:

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

---

# ՏԻՄՈԹԷՈՍ Ա. ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻ

---

*Մեծին Աթանասի աշակերտն եւ Աղեքսանդրիոյ հայրապետական գահուն վրայ իր երկրորդ յաջորդն է Տիմոթէոս* Ա. (381—385), *ծանօթ Եկեղ. պատմութեան մէջ ընդդէմ Արիանոսաց գործունէութեամբն, որ եւ ներկայ էր Կ. Պոլսոյ* 381*ի տիեզերական Սիւնհոդոսին. երբ պաշտպան հանդիսացաւ Մաքսիմոս Շնականի եւ արքունեաց աչքին խէթ մը նկատուեցաւ իւր աթոռոյն շահերն պաշտպանելուն համար*[1]։

*Իւր գրական գործունէութենէն շատ դոյզն յիշատակարան մնացած է. Սոզոմենոս* (*Պատմ.* Եկեղ. Զ. 29) *կ'ընծայէ իրեն Միանձանց վարուց հաւաքածոյ մը, որ այժմ անյայտ է. բայց կայ իր անուամբ* 63 *գլխով գրուածք մը "Պատասխանիք կանոնականք Տիմոթեայ Աղեքսանդրացւոյ"*[2], *որուն հայերէնն հասած է առ մեզ Աթանասի անուամբ. "*Կանոնք *Աթանասի գլուխք* ՁԷ"[3]։ *Գիտնականն* Caspari *իրմէ կամ իր եղ-*

---

1 *Մանրամասնութիւններ իր կենսագրութեան մասին հմմտ.* Dictionary of Christian Biography, Vol. IV, p. 1029—30.

2 *Հրտ.* J. B. Pitra, Juris ecclesiastici Graecorum historiae et monumenta. T. I. Romae 1864, p. 630–645.

3 *Հմմտ. Տաշեան՝ Ցուցակ,* 1053։

քօր եւ Նախորդի Պետրոս Բ.ի ձեռքէն կը համարի Աթանասի ընծայուած “Մեկնութիւնն ի Հանգանակն„[1]:

Բաց ի յիշուածներէս հայ Մատենագրութիւնն պահած է Աղեքսանդրիոյ Տիմոթէոս հայրապետէն ուրիշ երեք գրուածք ալ, որոնց յունարէն բնագիրն չէ յայտնուած տակաւին: Ասոնք են.

1. *Ի պատմութենէ վարուց Ս. Աթանասի, զոր ասացեալ է Տիմոթէի աշակերտի նորին եւ աթոռակցի Աղեքսանդրացւոյ*[2]*:*

2. *Տիմոթէոսի Աղեքսանդրացւոյ ի խորհուրդ Տեառնընդառաջին.* “Զայս որդի Դաւթի ընկալաւ Սիմէոն ի գիրկս իւր„ սկզբնաւորութեամբ:

3. *Նորին Տիմոթէոսի սրբոյ եպիսկոպոսի Աղեքսանդրու ասացեալ ի սուրբ Կոյսն Մարիամ եւ յողջոյնն Եղիսաբեթի:*

Աթանասի վարուց հարազատութեան մասին խնդիր կարելի չէ ընել. բայց խնդրական հարկ է համարիլ երկու վերջին ճառերը, որոնք ձեռագրաց մէջ շատ անորոշ ճակատ ունին. Տիմոթէոս անուն 4 հայրապետ[3] ունեցած է

---

1 Bardenhewer O., Patrologie, S. 23.

2 Հրտ. Ս. Աթանասի ճառք, թուղթք եւ ընդդիմաասացութիւնք. Վենետ. 1899, էջ 24–26:

3 Իւրաքանչիւրի մասին հմմտ. Dictionary of Christ. Biogr. IV, p. 1031–1034.

Աղեքսանդրիոյ աթոռն երկու դարու անջրպետի մէջ․ Տիմոթէոս Կուզ (457—477), Տիմոթէոս Սաղոփակիողոս (460—482), Տիմոթէոս Գ. (519—535). ասոնք եւս կարող են հեղինակ նկատուիլ։ Իրաց անորոշութեան մէջ սակայն հարկ է խուսափել ենթադրութիւններէ։ Գոնէ ոչինչ յայտնի կրնանք ըսել առաջին ճառի նկատմամբ, որ “Մատենադարան„էն[1] միայն ծանօթ է մեզ։ Կանգ կ'առնունք մենք յատկապէս երկրորդին քով, որմէ երկու օրինակ ունինք մեր Հաւաքածոյին մէջ։ Առաջինն է Թ. 7, Թղ. 319ա—320բ ճառընտրի (A) մէջ՝ գրուած 1439ին (Հմմտ. Տաշեան՝ Ցուցակ էջ 34)։ B օրինակ անուանածնիս յետագայ հրատարակութեան մէջ կը համապատասխանէ Դերձակեան Մարտիրոս դպրի 1808ին ի Կ. Պոլիս ընդօրինակած ճառից հաւաքածոյին, զոր ստացած ենք վերջերս Կ. Պոլսէն։ Ձեռագիրն նշանակալից է, ըստ որում օրինակուած կ'աւանդուի Յովհ. Կոլոտի յամի 1771 Մշոյ Առաքելոյն Թադէի Վանուց անուանի “Մեծ Ճառընտրէն„ կատարած քաղուածքի վրայէն։ Ձեռագիրն անթիւ է տակաւին, ուր յիշեալ ճառն կը գտնուի 73բ—76ա թղթերու վրայ։

Թ. 7. Ձեռագրին համեմատ Տիմոթէոս “Աղեքսանդրու Աթանաս հայրապետի աշակերտն է„, որուն կը համաձայնի կերպով մը վերագոյն նշանակուած խորագիրն ալ։ Վենետիկեան օրինակի մը համաձայն, զոր կը յիշատակէ Հ. Զարբ.

---

[1] Զարբանալեան Հ. Գ., Մատենադարան նախնեաց, Վենետ. 1889, էջ 732—3։

(Մատ. 733) “Տիմոթէոս աստուածասէր քահանայ„ է լոկ։

Հայերէն թարգմանութեան ժամանակը անյայտ է. Ձեռագիրք, ուր կը գտնուի Ճառս, կը բարձրանան մինչեւ 1194, երբ գրուած է Պարիսի 110 Ձեռագիրն (Թղ. 69—70. հմմտ. Macler, Catal. 49)։ Այս թուականն սակայն հաստատուն կռուան մը չ՚ընծայեր մեզ, որուն վրայ անկասկած յենուլ կարենանք։ Թարգմանութեան ոճն նկատելով կը կարծենք թէ հայացած ըլլայ Զ. դարուն յունարէնի վրայէն։ Հնոց քով որ եւ իցէ ակնարկութեան չենք պատահած այս նկատմամբ։ Հայկազնեան բառագիրքն “փաղղական„ բառին մէջ յառաջ կը բերէ ՃՃ (Ճառընտիրք) մատենէն կոչում մը, որ աղերս մ՚ունի Ճառիս հետ (տես տող 132 ծան.)։ Կռուան մ՚ունենայինք թերեւս հոս, եթէ յայտնի ակնարկութիւն մը գտնէինք յիշեալ տեղւոյ նկատմամբ։

Մեր հրատարակած Ճառի արժէքն աւելի հայրախօսական տեսակէտով նշանակալից պէտք է համարիլ քան հռետորական ոճի եւ յօրինուածութեան։ Շատ անպաճոյճ է ընդհանրապէս խօսուածքն, բայց գաղափարական է պատկերն, առանձնայատուկ պատմելու ոճն են, որոնք հնութեան նկարագիր մը կը ցոլացնեն։

Հայերէն լեզուն եւս պարզ է, շատ տարբեր նոյն հեղինակի ընծայուած Աթանասի Վարուց լեզուէն, որ խրթին եւ յունաբանութեամբ է։ Իւր պարզութեամբն հանդերձ ունի իւր աղքատիկ լումաներն, զորս կը ձգէ լեզուի գան-

ձանակին մէջ, զոր օր. ընջղանալ, սատարանալ, ցեղենամ, խաղքակել, որոնք առաջին անգամ հոս յերեւան կ՚ելլեն։

Հրատարակութեանս մէջ բնագիր ընտրած ենք Թ. 7 Ձեռագիրն (A), ուր ուղղագրութիւնք աւելի ճշգագոյն էին եւ հին քան Bի մէջ, որ փոփոխած է, զ. օր. աւ = օ։ Կարեւոր չտեսանք ամէն անգամ նշանակել ծանօթութեանց մէջ այս կարգի տարբերութիւնք։ Երկու ձեռագրաց համաձայնութեան համար պէտք է դիտել որ B շատ յաւելուածներ ունի, որոնք կը պակսին A.ի մէջ. այսպիսի յաւելուածներէն, որոնք մեզի հին երեւցան, մուծեցինք բնագրին մէջ, ինչպէս եւ ինչ ինչ լաւագոյն ընթերցուածներ. տարբերութիւնք մանր նշանակուած են ծանօթութեանց մէջ։

Փափաքելի էր մեզ արեւելասէր հայրախօս արեւմտեայց կից ի Ս. Կոյսն Մարիամ եւ յՈղջոյնն Եղիսաբեթի ճառիս նաեւ ի խորհուրդն Տեառնընդառաջի ճառն մատչելի ընել, որ նոյնչափ հետաքրքրական է իբրեւ ցայժմ այլուստ անյայտ հայրագիտական բեկոր։ Այս փափաքն որ չյաջողեցաւ մեզ գոհացընել, յուսով ենք թէ այլք նպաստաւոր պարագայից մէջ կը հանեն ի գլուխ։

---

## ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՏԻՄՈԹԷՈՍԻ

*սրբոյ եպիսկոպոսի Աղեքսանդրու ասացեալ ի սուրբ կոյսն Մարիամ եւ յՈղջոյնն Եղիսաբեթի:*

***Մ**ի արդեւք վայրապար ինչ Մայր ինքեան՝ մարմնանալ կամելով արարիչն՝ կոչեաց զՄարիամ, զաղքատն այլ եւ զհաւատարիմն, զայն, որ գրաստ ոչ ունէր, որ եւ զԲանն կենաց յորովայնի կրէր. ոչ էր նորա բազմութիւն ընդածնաց յորդողաց, ոչ զինուորաց շրջապահից հաւաքումն. բայց միայն ոտիւք սրբովք եւ մաքուր գնացիւք հետեւէր ընդ ճանապարհն: Առ այսոքիւք անչափ էր խոնարհութիւն նորա եւ հեզութիւն եւ հանդարտութիւն, զի ինքն երթայր յառաջագոյն եւ զԵղիսաբեթ*

---

1—4. Խորագիրն պէսպէս է յետագրաց ձեռ. A ունի "*Երանելւոյն Տիմոթէի աշակերտի Աթանասի Աղեքսանդրու հայրապետի ասացեալ ... մաւրն Յովհաննու:*" B. "*...Բան ճշմարտութեան ասացեալ ի Ս. Կոյսն Աստուածածին ...*": Չորք. Մատենադարան, 733 կը յիշէ նաև ըստ այլ Ձ. "Խօսք Տիմոթէոսի աստուածասէր քահանայի ի սուրբ Աստուածածինն եւ ի նորին ողջոյնն, որ Պարիզի Թ. 110 Ձեռագիրն ըլլալու է, է ձեռ. բերուած Macler է (Catalogue, p. 49) „Discours du bienheureux Timothée sur la sainte Vierge et sur la Salutation."

5. AB. Արդեւք: Այսպէս Չորք. 732. — 6. A. Կամելով [մարմ]նանալ կ'ուզէ: A. Չորք. չէ Արարիչն: B. զՄարիամ կոչեաց: — 7. B. ոչ. գոյ. այլ եւ: Կը յիշէ նաև զտառապելագոյնն այլ զմեծերիմն: — 8. B. այլ եւ: — 9. B. ընդածնայ:

10. B. բայց սակայն: — 11—12. B. հետեւակէր ընդ ճանապարհս. A. այսոքիկ: չէ էր:

ողջունէր. ոչ ասելով յինքեան. Ես կոյս եմ, իսկ նա ամուլ, ես Աստուածածին, իսկ նա մարգարէածին. նա մայր Ձայնին, իսկ ես Բանին Հաւր, որ անբաժանաբար յինէն մարմնացաւ, նա ծնանի զճրագն, իսկ ես զարեգակն արդարութեան յղացեալ ունիմ։ Արդ պարտ էր նախ ամլոյն ողջունել զԿոյսն. պարտ էր նախ մարգարէածնին, հանդիպել յառաջագոյն Աստուածածնին. քանզի եւ պարտ իսկ էր մաւր Ձայնին ընթանալ առ մայր Բանին, վայել էր յղացելոյն զճրագն՝ ողջոյն տալ ծնողին զարեգակնն արդարութեան. այլ ոչ այսպիսի ինչ ածէր զմտաւ Կոյսն, այլ ելանէր անհեղգաբար եւ յառաջեալ ողջունէր զԵղիսաբեթ։ Քանզի պարտ էր ի խաղաղութեան մաւրէն խաղաղութեանն յառաջագայիլ. պարտ էր յառաջաձայնել խնդութեանն որ ի ներքս յորովայնին էր՝ պարաբարձողին զմարգարիտն խնդութեան։

Եւ զի՞նչ յողջունելն Մարիամու պատահէր. Եւ իբրեւ լուաւ, ասէ, · զողջոյնն Մարիամու Եղիսաբեթ, խաղաց մանուկն ցնծութեամբ յորովայնի նորա եւ լցաւ Եղիսաբեթ Հոգւով սրբով։ Ցիրաւի Յովհաննէս ի ծնունդս կանանց մեծ քան զամենեսեան կոչեցաւ. քանզի այն ինչ

---

15. A. եմ ես։ B. չիք իսկ։ — 16. A. մարդածին։ — 17. B. չիք Հաւր։ — 18. A. անժամանակաբար։ — 19. B. ճրագն։

20. B. եմ... պարտ է։ B. զԿոյսս։ — 21. B. է. չիք յառաջագոյն։ — 22. B. Աստուածածնիս... է։ — 24. B. զառաջինսն տալ։ B. զարեգակն։

25. B. ոչինչ այսպիսի զմտաւ ածէր Կոյսն։ Արդ ելանէ անհեղգաբար Կոյսն ի տաղաւարն եւ յառաջ ողջունէ Եղիսաբեթ։ Քանզի պարտ էր խաղաղութեանն յառաջագայիլ...։ — 29—30. A. ի ներքոյ որովայնին պարաբարձողին։ B. բերողին։

33—35. Ղուկ. Ա. 41։ — 33. B. Եւ եղեւ. չիք ասէ։ — 35. B. մանուկն յորովայնի նորա ցնծալով։ A. հոգով։ — 36. A. մեծ ի ծնունդս։ — 37. B. կանանց մեծ կոչեցաւ։ A. չիք կոչեցաւ։

ի սպասաւորել ականջաց մաւրն ընկալաւ զձայն Աստուածածնին, եւ որպէս պարաւղ խնդութեան՝ պատրաստաբար ի վեր խայտաց. որպէս փեսայածու տեսանել զփեսայն սախպէր, որպէս մկրտիչ տեսանել ցանկայր զընդ աւրինաւք խոնարհեալն. եւ զհանդերձեալ մկրտութեանն շնորհ նորոգել, եւ մղէր զորովայն մաւրն ոտիւք պքացելով եւ զարգանդն հարստահարէր, որպէս թէ նմանեալ ինչ ասել առ ծնաւղն. Կամ ծնիր, կամ ասա զպքանչելիս. բաց զդուռն, ով մայր, եւ ելանել զմկրտիչս առ Տէրն իմ մի արգելուր, մի յաչաղեր ինձ վասն խնդութեանս; մի զրկեր զիս ի տեսանելոյ, զոր բազումք ի մարգարէիցն ցանկացան տեսանել եւ ոչ տեսին, այլ պահէր սուրբ կուսիդ:

Բայց սակայն եւ այն ինչ Ցովհաննէս խայտաց եւ լի Հոգւով սրբով լինէր Եղիսաբեթ: Ուստի՞ կամ ո՞րպէս. բայց եթէ ի հայցելոյ նախընթացողին եւ ի պարգեւելոյ Քրիստոսի. որպէս զի բերան մանկանն · Եղիսաբեթ եղիցի, որ ոչ կարէր տակաւին զշրթունսն շարժել. իսկ նա փոխ տայր մկրտչին զբերանոյն զգործարանն. եւ ցուցանէ բանիս՝ հետեւողքդ դմին: Եւ աղաղակեաց ի ձայն մեծ եւ ասէ. Արհնեալ ես դու ի կանայս եւ աւր-

---

38. A. զի... ակընջաց: B. ի սպասաւորելն ... լուաւ: — 39. B. պարող:

40. B. խայտայ: — 41. A. տեսանելով: — 43. B. շնորհ մկրտութեան: — 44. B. պքացեալ ոտիւքն: — 45. B. չէ+ թէ: — 46. A. ասէր. B. ծնողն.. եւ կամ: — 47. B. զպքանչելիսդ. A. յելանել առ Տէրն: — 48—9. A. մի յապաղեր ինչ վասն իմ խնդութեանս:

50—1. A. որում բ. ց ի մարգարէիցն, այլ պահէր...: B. պահիւր: — 52. A. բայց մինչ Ցովհաննէս: — 53. A. լի լինէր: — 54. A. չէ+ հայցելոյ: — 55. A. պարգեւելոյ: — 56. A. Եղիսաբեթի: B. ոչ եւս: — 57. A. չէ+ իսկ: — 58. B. տայ. A. զՄկրտչին: B. գործարան: — 59. A. ցուցանաւղ հետեւող բանին ըստ դմին աղ.: — 60. A. ասելով:

հնեալ է պտուղ որովայնի քո. եւ ուստի՞ է ինձ այս, զի եկեսցէ Մայր Տեառն իմոյ առ իս։ Աւրհնեալ ես դու ի կանայս, քանզի ամենայն կանանց աւրհնութիւն յերկնից իջուցեր. դու զնախատինս Եւայի դադարեցուցեր. դու յղացար զմարգարիտն, զոր Հայր յառաջ քան զյաւիտեանս ծնաւ. դու զողկոյզն աճեցուցեր, որ զամենայն երկիր ուրախութեամբ արբոյց. դու զբժիշկն հոգւոց ծնանիս, որ զկոյրս լուսաւորէ, եւ զյաւիտենից մեռեալսն յարուցանէ։ Եւ Եղիսաբեթ յաջորդէր զԳաբրիէլին ասելով. Ուրախ լեր բերկրեալդ, Տէր ընդ քեզ. աւրհնեալ ես դու ի կանայս եւ աւրհնեալ է պտուղ որովայնի քո։ Զի աւրէնք եւ մարգարէք անուան եւ ակն ունին քեզ եւ ամենեցուն աստուածազգեցիցն բերանք ի քեզ, գոն բացեալք. աւրհնեալ ես դու ի կանայս, քանզի ի քէն ծագեաց արեգակն արդարութեան. եւ դու ծնար զառաւաւտն, որ զմշտնջենաւոր տիւն արար ի կենցաղումս։ Աւրհնեալ է պտուղ որովայնի քո, քանզի մի է հատ, եւ ոչ տանին տիեզերք զկալն. մի է ողկոյզն, բայց հնձանն հանդերձ երկրաւս եւ զերկինս միանգամայն ստացեալ ունի. մի զառն հանդիպի, եւ վաստակին քահանայք միշտ զենլով. մի է զուարակն, եւ ոչ գոն բաւական սեղանք առ ի բառնալ զզոհսն. մի է նմանապէս խոյն, բայց բաժինքն

---

59—62. Ղ--կ. Ա. 43—44։ — 62. B. եկեսցէ առ իս։ — 63. B. վասն զի։ — 68. B. յառաջ բերեւ զայն, որ։ — 69. A. զկուրս. B. եւ զկաղս գնացուցանէ. Եղիսաբեթ ...։

70. A. յաջորդէ։ — 71. Ղ--կ. Ա. 29, 42։ – 73. B. Զի քեզ. — 74. B. եւ ամենեցունց աստուածազգեստից։ — 75. B. բացեալ։ – 76. B. Քանզի հանդիպիս դու լուսին եւ ի ձեռն քո ծագեաց։ — 77. B. չէ+ եւ։ — 78. B. մշտնջենաւորիւ։ B. օրհնեալ ես դու ի կանայս եւ օրհնեալ...։ — 79. B. քում. A. մի հատ է, տանին...։

80. B. մի ողկոյզ։ — 81. A. եւս։ — 84. A. զոյ։ B. բաշխել զզոհն։ — 85. A. զոհսն։ B. գառինքն։

անցանեն ըստ Թուով. քանզի ի նմա պատուաստէր աւազակն, եւ պոռնիկն ընջղանայր, եւ մաքսաւորն սատարանայր, եւ հալածիչն Պաւղոս ցեղենայր:

Ուրախ լեր բերկրեալդ, Տէր ընդ քեզ, աւրհնեալ ես դու ի կանայս, եւ աւրհնեալ է պտուղ որովայնի քո. եւ ուստի՞ է ինձ այս, զի եկեսցէ մայր Տեառն իմոյ առ իս: Ով զՏիրուհի աղախինդ առաքեաց առ իս. վասն քո Գաբրիէլ յերկնից գայ. վասն քո եւ վասն առ ի քէն ծնիցելոյդ բազմութիւնք հրեշտակաց փառաբանեն ասելով. Փառք ի բարձունս Աստուծոյ եւ յերկիր խաղաղութիւն ի մարդիկ հաճութիւն. վասն քո Աստուածազգեցիդ եւ միշտ Կուսիդ մոգքն յարեւելից ի Բեթղահէմ ընթացան. վասն քո հովիւքն աւետարանեալք ընթացան յայրն երկիր պագանել առ ի քէն ծնիցելոյն լուսաւորչին անձանց մերոց Քրիստոսի Աստուծոյ մերոյ. ի քեզ Հոգին սուրբ եկն, եւ Հայր հովանի կալաւ, եւ Բանն բնակեաց: Եւ ո՞վ զայսպիսիս եւ զայսքանիակ զսուրբ եւ զանչաղախ զմիշտ Կոյսն առ ամուլս արձակեաց, քանզի ահա իբրեւ եղեւ ձայն ողջունի քո յականջս իմ, խաղաց մանուկս ցնծալով յորովայնի իմում. զհնձան՝ զորովայնս իմ ներկայցոյց մանուկս. հնձան եւ մրցա-

86. B. անցանելն: A. ընդ: A. պատուաստի. B. պատուաստիւր: — 87. B. ընչղանայր. A. ճոխանայր: — 88. A. սատերանայր. այսպէս եւ Վենետ. օր. (ՀԲ. Բ. 699): 90. A. եւ Վենետ. (ՀԲ.) բարձրանայր: Ցեղենամ. Միրեան՝ բառանել, յառաջ գալ, չեղել:

89—93. Ղուկ. 29. 42-43: — 89. A. չիք տող: — 92. B. ով զՏիրուհին առ աղախինս արձակեաց: — 94. B. ծնեյոյդ: 95-97. Ղուկ. Բ. 14: — 99. A. ի մարդիկք: B. աստուածազգեստիդ: 100. B. մոգք. A. Բեթղեհէմ: 100. B. փութացան: A. յայրին: B. երկրպագել: B փոյն առ ի քէն լուսաւորիչդ: — 102—105. չունի A. — 105. A. որպէս. Ղուկ. Ա. 44. — 107. A. չիք ցնծալով: A. հնձայն զորովայն իմ նկարեցից մանուկս. հնձայն եւ B... ապարէզ: Ներկայացոյց, Ներկայացուցանել = ἐνίστημι.

րան միանգամայն եւ ապարէս. քանզի որպէս հնձանահար Յովհաննէս խայտայր յորովայնին, եւ որպէս պարաւղ վազէր, եւ որպէս նախընթաց շուրջ ընթանայր ցնծութեամբ՝ տեսանել զիւրաքանչիւրան. զի խայտալովն ոչ տրտմեցուցանէր, եւ շուրջ ընթանալովն ոչ խաղբակէր, եւ ոչ վազելովն նեղէր զլթաղանթն։

Երանելի ես դու ի կանայս, ով Աստուածածին, որ զառաջին երանութիւնսն ամենայն ազգաց ծագեցեր, զի եղիցի կատարումն ասացելոցն նմա ի Տեառնէ. ոչ կարծեմ զաւրհնութիւնն, զի պատուասէր է, որ ի քեզդ է. ոչ նեղեմ զերանութիւնդ, զի որ ընդ քո ձեռամբդ է, աննախանձ է։ Երանելի ես դու, ով Աստուածածին, որ հաւատացեր, թէ եղիցի կատարումն ասացելոցդ ի քեզ ի Տեառնէ։

Ընդ Աստուածածնին եւ մեք ամենեքեան, ընկալցուք զերանութիւնն, որք նախանձաւորք եմք եւ երկրպագեմք սրբոյ Աստուածածնին. եւ ընդ Կուսին, որք մաքրութեան Կուսին նմանին. ընդ մաւրն Էմմանուէլի, որք զանձինս իւրեանց տաճար Էմմանուէլի արարին, եւ փեսայարան զմարմինս իւրեանց եաուն. ընդ անամուսնացելոյն, որք յանիրաւ ամուսնութենէ փախչին. ընդ հար-

110. A. խայտար։ — 111. B. պարող, նախընթացող։ “Նախընթացող” ունի եւ Մինէս էջ. (ՀԲ.)։ — 113. A. տեսանէր. B. վասն զի։ — 115. B. զլթաղանդան։ — 117. B. օրհնութիւնսն ամ կանանց։ — 118. A. նմայ։

119. B. օրհնութիւնս. քանզի պատուասիրէ։ 120—1. B. ոչ նեղեմ նրբեմ զերանութիւնս, վասն զի ընդ քո ձեռնդ է։ — 121. B. չէ+ ով։ A. Աստուածայծին։ B. զի հաւատացերդ . . . ասացելոցն նմա։ — 124—27. B. ընդ Աստուածածնին մեք. ամենեքեան, որք նախանձաւորք Աստուածածնին եմք, ընկալցուք զերանութիւն։ Ընդ Աստուածածնին որ երկրպագեմք սրբոյ Աստուածածնին։ Ընդ Կուսին, որք . . .։ — 127. B. նման են. — 130—131. B. Էմմանուէլի։

130. A. զանձինս. A. ամուսնացելոյն։ — 131. B. յանգրաւ յամուսնութենէ։ B. հարսին։

*սիննս Տեառն երանին, որք յամենայն գիջական փաղաղութենէ պահեն զանձինս իւրեանց. ընդ ծնիցելոյն զԲանն՝ զվան մեր մարմնացելոյն՝ որք զՀայր առ ինքեանս բարի աւրինաւք եւ իմաստութեամբ ձգեն, եւ հանդերձ Հարբ զՈրդի, եւ հանդերձ Որդւով զՀոգին սուրբ։ Երկրպագեմք համագոյ սուրբ Երրորդութեանն, զի նմա են փառք եւ պատիւ այժմ եւ միշտ։*

---

132. Այսոգիկ A. էր Վէնէտ օր. (ՀԲ.)· նոյ B. *փաղաղական գիջութենէ պահեցին զանձինս.* Հմմտ. տե-ս ՀԲ. բառն փողփոյան. “*Երանի է կուսից, որք կացին յուխտին ընդ Քրիստոսի միաբանութեամբ, եւ պահեցին զանձինս յամենայն փաղաղական գիջութեանց եւ ի խորհրդոց անմաքրից*„ (ՃՃ)։ — 134. B. *ծնելոյն*։ — 135–39. B. *Որք զհայրն բարի օրինօք իմաստութեան առ ինքեանս ձգեն. եւ հանդերձ մարբն զՈրդի։.. որ եւ երկրպագեմք ... զի նմա է ... եւ ունողութիւն. եւ յաւիտեանս. ամէն*։



Բ.

# ՀԱՅԵՐԷՆ ՆՈՐ ԲԱՌԵՐ

# ՏԻՄՈԹԷՈՍ ԿՈՒԶԻ

## ՀԱԿԱՃԱՌՈՒԹԵԱՆ ՄԷՋ

---

ԳՐԵՑ

ՀՐԱՉԵԱՅ ԱՃԱՌԵԱՆ





ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1909.

## ՅԱՌԱՋԱԲԱՆ

—

Իւրաքանչիւր նորագիւտ հայ բնագրի մէջ անսպասելի չէ գտնել բառական նորանոր մթերքներ, որոնք այլուստ մեզի անծանօթ մնացած ըլլային: Այս տեսակէտով զարմանալի հարուստ է Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան նորագիւտ բնագիրը, որ վերջերս տպուեցաւ Էջմիածնի մէջ՝ Կարապետ Վրդ. Տէր Մկրտչեանի եւ Երուանդ Վրդ. Տէր Մինասեանի աշխատակցութեամբ: Ստոյգ է որ իր պարունակած այդ նոր հայ բառերէն մեծ մասը զանազան նախամասնիկներով կերտուած ձեւեր են (որոնցմով այնպէս հարուստ է յունական դպրոցի հայերէնը) եւ ըստ այսմ առանձնապէս հետաքրքիր չեն հայ լեզուի ուսումնասիրութեան համար: Սակայն ասոնցմէ դուրս՝ Տիմոթէոս ունի նաեւ խումբ մը մաքուր արմատական ձեւեր կամ ա՛յնպիսի նոր ածանցներ,

*որոնք պիտի ճոխացնեն հայ բառարանը եւ որոնց ստուգաբանութիւնը կրնայ ծառայել նոր խնդիրներու լուսաբանութեան:*

*Ներկայ հատորիկիս մէջ ջանացի հաւաքել այն բառերն ու ձեւերը, որոնք վերջին երկու տեսակէտով կրնային օգտակար ըլլալ: Ասոնց աւելցուցի նաեւ այն դժուարիմաց բառերը՝ որոնք կարօտ էին լուսաբանութեան եւ հետաքրքիր՝ բնագրաքննական տեսակէտով: Իսկ այն բառերը՝ որոնք յունահայ մատնիկներու (առ, տար, պար եւն) յարադրութեամբ կազմուած սովորական ածանցներ են եւ առաջին հայեացքով հասկնալի, կը թողում այն Լիակատար Հայ բառարանին, որ ապագայ հայերէնագէտներու գործը պիտի ըլլայ:*

*Նոր-Նախիջեւան 1908 Հոկտ. 12:*

ՀՐԱՉԵԱՅ ԱՃԱՌԵԱՆ

## ՀԱՅԵՐԷՆ ՆՈՐ ԲԱՌԵՐ

# ՏԻՄՈԹԷՈՍ ԿՈՒԶԻ

## ՀԱԿԱՃԱՌՈՒԹԵԱՆ ՄԷՋ

---

### 1. Աղէջ։

*Մէկ անգամ գործածուած է Տիմոթ. էջ 283, ըստ ամենայնի պարզ հատուածի մը մէջ. «Ի Դաւթայ էր կոյսն, եւ Յովսէփ՝ որ արդար ելով եւ պահապան օրինի՝ յիւրմէ հայրենոյ եւ ի տանէ առնէր իւր զկոյսն, քանզի հրամայէր օրէն ոչ պարտ գոլ առնուլ կին, եթէ՝ ոչ ի նոյն ցեղէ։ Եւ վասն զի ոչ էր օրէն առ հրեայսն ազգաբանել զկանայս, զի զառաւորութիւնն պահեսցէ աւետարանիչն եւ մի՛ թուեսցի տարագծել ի նախերգանացն եւ շաղէջն մեզ ծանուցէ, սակս այսորիկ զնախնիս նէրա լռեաց, իսկ զՅովսէփ ազգաբանեաց, զի ուսցուք նովաւ զՄարիամ, եթէ՝ էր ի տանէ Դաւթի, ուստի եւ ինքն»։*

*Խօսքը Ս. Կոյս Մարիամի վրայ է՝ դեռ չնշանուած, եւ հետեւաբար աղէջ կը նշանակէ «նշանելու աղջիկ կամ պարզապէս աղջիկ»։ Հինէն աւանդուած է մեզի աղէճ ձեւ մ՚ալ՝ «բոզ» նշանակութեամբ (Նււ. Քր.)։ Երկու բառերն ալ նոյն են։ Լեզուներու մէջ «աղջիկ» նշանակող բառը կրնայ յետոյ «բոզ» իմաստն ալ առնուլ. Հմմտ. հայ. բող, վրաց. բողէ, որ լազ. բող՝ «աղջիկ»*

բառն է. ֆրանս. fille «աղջիկ» որ ժողովրդական լեզուին մէջ «բոզ» իմաստն ալ ունի։

ԲՆՍ. 1906, 106 ողճ բառը նոյն դրած ենք ողջիկ ձեւին հետ. այս համեմատութեան մասին եթէ կար կասկած մը՝ ձեւին (ճ-ով) եւ նշանակութեան տարբերութեան համար, նորագիւտ թանկագին ողջ ձեւին ներկայութեամբ կը փարատի։ Հետեւաբար ողջիկ բառը ողջին նուազական կամ փաղաքշական ձեւն է։

## 2. Ամպարտել։

Զպատճառս գայթակղութեանն եւ այսքանեաց արեանց եւ հալածանաց եղելոյն ոչ ամպարտեսցէ Տէր, ոչ ի յաւիտենիս յայսմիկ եւ ոչ ի հանդերձելումն. Տիմոթ. էջ 150։

Ամպարտել «անպարտ կացուցանել, ներել»։ Ն ձայնը շրթնականի քով դարձած է մ։

## 3. Անօսրել։

Ցարուցէ Աստուած երկնի թագաւորութիւն ի վերայ երկրի, որ յաւիտեանս ոչ ապականեսցի եւ թագաւորութիւն նորա ժողովրդեան միւսում ոչ մնասցէ, անօսրեսցէ եւ մալեսցէ զամենայն եւ ինքն վերակացեսցէ յաւիտեանս։ Տիմոթ. էջ 247։

Անօսրել «փշրել, մանրել, խորտակել։»

## 4. Աղաւարթակ։

Այս բառը կը գտնենք Հին Հայկազեան բառարանի եւ Առձեռնի մէջ «անմաքուր, աղտոտ» նշանակութեամբ, իբր առնուած Հին Քերականներէ։ Նոր Հայկազեանը չի յիշեր զայն։ Տիմոթ. էջ 160 մէկ անգամ ունի այս ձեւը. «Քանզի որպէս ի նուսական աղաւարթակոցն յառաջ եկեալ

մարդ ոչինչ նհատ Ասատուած ի ձեռն ճահագործութեանն ճանաչիւր, այսպէս եւ մարմնով մեռեալ յարոյց զսա....՛՛ Տեղէն եւ գործածութենէն յայտնի է որ աղաւաղօրէն "կանացի անդամ, ամօթոյք կամ արգանդ" նշանակութիւնն ունի. յոգնակի գործածութիւնը համապատասխան է Հաժ+ հոմանիշին, որ նոյնպէս անեզական է. հմմտ. Փիլ. այլաբ. էջ 108, Տիմոթ. կուզ էջ 292 եւն։ Ըստ այսմ Հին Քերականներու "անմաքուր, աղտոտ" նշանակութիւնը սխալ է եւ աղաւաղ "թրիք, քակոր" բառէն ենթադրուած։

## 5. Առոտղտղել։

Զի՞նչ աղէ սաես, հերձուածող. Տէր եւ մա՞րդ, եթ՛ ոչ. արդ եթէ Տէր, հաւասար են սատացեալքն. իսկ եթ՛ ոչ Տէր, մի՛ դու սուկ մարդ առնելով զՔրիստոս, ինձ առոտղտղեր զնախատինսն։ Տիմոթ. էջ 108։

Թուի թէ բառս կը նշանակէ "ուղղել," յատկապէս "խօսքը մէկուն ուղղել։" Ծանօթ են արդէն ոտղտղել "դեգերիլ, թափառիլ," ոտղտղեցուցանել "խոտորցնել, շեղել" եւն ձեւերը (տես ՆՀԲ)։ Այսուհետեւ չկրնար բաժնուիլ առոտղտղել, իբր կազմուած առ մասնիկով։

## 6. Առոչէց։

Երկրպագեմ ընդ աստուածութեանն զսա (զՔրիստոս), իբր աստուածայնւոյ առոչէց ճոխութեանն։ Տիմոթ. էջ 122։

Առոչէց կամ նոր բառ մըն է "հաւասար" իմաստով, եւ կամ աւելի լաւ՝ ուղղելի է զառոչէց։

## 7. Առոփել։

Եւ Յովսէփ, որ արդար էլով եւ պահապան օրինի՝ յիւրմէ հայրենոյ եւ ի տանէ առփէր իւր

զկոյսն, քանզի հրամայէր օրէն ոչ պարտ դոլ առնուլ կին, եթ՝ ոչ ի նոյն ցեղէ։ Տիմոթ. էջ 283։

Քանզի ասպօղին ի բաց երեւեցելոյ ի տանէ Դաւթի եւ Կոյսն ընդ նմա ցուցեալ է՝ հաւաստապէս ի սերմանէ ելով Դաւթի, յորմէ եւ ծնիցաւ Յիսուս Քրիստոս։ Տիմոթ. էջ 283։

Առնել «ամուսնութեան համար նշանած մը ընտրել, աղջիկ ուզել», ասպօղ «աղջիկ ուզող, նշանած, փեսացու։»

Առձեռն Բառ. ունի Հասպէլ «Նշանուիլ աղջկան», որ վերինին հետ նոյն է. Հ ձայնին տարբերութեան համար հմմտ. ասպել եւ Հասպել «զօրացնել, ամրացնել, հաստատել։»

## 8. Արագ։

Ի ձեռն ծննդեանն արագ զկինն, զի կենդանութիւն պտղաբերեաց աշխարհի։ Տիմոթ. էջ 266։ — Տպագրական կամ ձեռագրական սխալ մըն է. ուղղելի է արար։

## 9. Արժէ։

Յաղագս չօշափելոյս այսորիկ եւ Պետրոս գոչէր. «Զայս Քրիստոս յարոյց Աստուած, աջովն Աստուծոյ բարձրացեալ.» իսկ աջովն օգնելոյ Աստուածն Բան ոչ պիտայր արժէ (?)։ Տիմոթ. էջ 128։

Արժէ ձեւին առջեւ հրատարակիչները հարցական մը դրած են. ըստ իս այս հարցականին պէտք չկայ. Նոյն տողը պէտք է կարդալ՝ «իսկ աջովն օգնելոյ Աստուածն Բան ո՞չ պիտայր, ա՛րիէ։» Վերջին բառս կը նշանակէ «ո՜վ արիոսական, իբր ո՜վ հերձուածող» եւ Արիոս բառին յունաձեւ կոչականն է. ճիշտ ինչպէս նոյն էջ, քանի մը տող վերը ունինք՝ «ո՛ տկարացալ, հե՛րձուածող, Աստուածն Բա՞ն։»

## 10. Արփափուր։

Ճանաչելով արփափուրս (?) զերկրպագօղս ճշմարտի Հոմագոյ երրորդութեանն կամաց ամպարշտ(ից ?)՝ մատնեցին ի մահ եւ յարտասահմանութիւնս հեռաւորս։ Տիմոթ. էջ 332։

Որպէս Դարիոս արքա ի վերա Դանիէ(ղ)ի արար, թեպէտ եւ կռապաշտ ելով, զի անդաստաբար արփափուր ղարդարն մատնեաց կամեցօղաց ի մահ։ Տիմոթ. էջ 333։

Առաջին վկայութեան մէջ ձեռագիրը հինցած ըլլալով՝ հրատարակիչները արփափուր բառին քով կասկածական նշան դրած են. բայց այս նշանը աւելորդ է, որովհետեւ երկրորդ վկայութիւնը բաւական է ստուգելու զայն։

Սը նշանակէ "յանցաւոր։"

## 11. Բանէլ։

Ուրեմն ամպարիշտ եւ ի յաճախ անտեղեացն հատանելն յորդիս երկուս զմի Տէր Յիսուս Քրիստոս. իբր ի միոջէ այսուհետեւ դիմէ ամենայն բանեցի. քանզի մի ահա իմանի բնութիւն ինքեան Բանին մարմնացեալ։ Տիմոթ. էջ 107։

Ձեռագրին լուսանցքին վրայ բառս մեկնուած է "ասացի," իբր կրաւորական բանէլ բայէն։ Ասոր ներգործական բանէլ "ասել, խօսիլ" ձեւէն կազմուած են այլաբանէլ, մեծաբանէլ, ֆոռաբանէլ եւն, որոնց արմատականը գոյութիւն չունէր մինչեւ այժմ։ Հայերէնէ փոխառեալ են բոշայերէն ֆանէլ "ըսել, պատուիրել" եւ գնչուերէն penao "խօսիմ," penelo "խօսուած", pena "պատասխան։"

## 12. Գարէլ, ֆարամոյ։

Խոստովանեմք զմարմնոյ նորա կիրս ըստ ճշմարտութեանն եղանել եւ ո՛չ ըստ երեւոյթու-

թեան... իսկ ղաաօղն զնա խարաղանեալ՝ ոչ գ—րէլ, կամ խաչեցեալ՝ ի բեւեռացն նմա վարսիլ, իբր զհերձուածողս նզովեմք: Տիմոթ. էջ 276:

Ճշմարտապէս ի նմա զմերոն համբերեաց կերս իբր զմեզ եւ ոչ թուելութեամբ, վաստակեալ յուղեւորութեան եւ իբր զմեզ ննջեալ, եւ իբր զմեզ ի վարոցիլն ի Պիղատոսէ՝ գ—ր—ձ—ոցն որ ի վիրացն զգացեալ եւ յապտակիլն ցաւոցն իմացեալ եւ ի հարկանիլ բեւեռացն յոտս նորա եւ ի ձեռս՝ գ—ր—ձ—յ վշտից զգացեալ: Տիմոթ. էջ 29:

Վաստակեաց յուղեւորութեան եւ իբր մեք ննջեաց, եւ իբր մեք ի խարազանիլն ի Պիղատոսէ գ—ր—ձ—ոցն որ ի ջնմանցն զգացեալ, եւ յապտակելն ցաւոյն իմացեալ եւ ի հարկանելն զբեւեռսն յոտս իւր եւ ի ձեռս ցաւոց գ—ր—ձ—ոյն զգացեալ: Տիմոթ. էջ 275:

Եւ սակս այսորիկ Թերեւս եւ Յովք փութալով սակս գ—ր—ձ—ոցն գանձատմունս ամանակացն առընթանալ. "Եթե ննջեցից, ասէ, ասեմ՝ ե՞րբ օրն. իսկ եթե յարեայց, դարձեալ՝ ե՞րբ երեկոյ:" Տիմոթ. էջ 317:

Յիշեալ վեց գործածութեան մէջ կը տեսնուի որ գ—րէլ կը նշանակէ "ցաւիլ, ցաւ զգալ", գ—ր—ձ "ցաւ, վէրքի կսկիծ:" Այսպէս կը մեկնուի նաեւ էջ 241 էբր օր ց—ոյ, ուր ց— բառին դէմ իբր մեկնութիւն՝ լուսանցքին վրայ նշանակուած է "դարանոյ:" — Գ—ր—ձ—յ, գ—ր—ձ—ոց սեռական — տրական հոլովաձեւերն են՝ գ—ր—լ բային իբր խնդիր դրուած. Տիմոթէոս՝ ըստ յունաբան հայ դպրոցին՝ կ'ըսէ ց—ոյն գէ—լ, ինչպէս եւ ց—ոյն էմ—ն—լ, փոխանակ ըսելու գէ—լ ց—, էմ—ն—լ ց— կամ ց—ց—:

Գ—ր արմատը ծանօթ է մեզ բազմաթիւ ուրիշ ձեւերու մէջ. ինչպէս ց—ր—գ—ր, ո—լ—գ—ր, խել—գ—ր, ըէղ—ր—գ—ր, —ն—գ—ր, նաեւ գ—ր—ձ "հիւանդ, տկար", գ—ր—ղ—բէ—ն, գ—րէլէ կամ գ—րրէլէ:

Բառն ըստ իս իրանեան փոխառութիւն մ'է. հմմտ. պրս. گر gar “բոր, բորոտութիւն,” պհլ. gar, սանս. garā- “հիւանդութիւն մը,” գնդ. garənu “հիւանդութիւն մը,” քրդ. gir եւ պեհլուճ. gar “բորոտութիւն։” Զանդիկ ձեւին մասին եղած այլեւայլ քննութիւնները տես Horn, Grundr. էջ 200։

## 13. Գէրասպարէլ։

Գերասպարեցից վասն քաղաքիս այսորիկ, սակս իմ եւ Դաւթի հօր քո։ Տիմոթ. էջ 282։

Ինչպէս հրատարակիչները կը նշանակեն, հատուածս առնուած է Ս. Գրքէն. հմմտ. Դ Թագ. ԺԹ. 34, Ի 6, Եսայի ԼԵ 35։ Եօթանասնից հայ թարգմանութիւնը յիշեալ տեղերնուն հետեւեալ ձեւով.

Եւ վերակացու եղէց քաղաքիդ այդմիկ փրկել զդա վասն իմ եւ վասն Դաւթի ծառայի իմոյ. Դ Թագ. ԺԹ. 34։

Եւ վերակացու եղէց քաղաքիդ այդմիկ վասն իմ եւ վասն Դաւթի ծառայի իմոյ. Դ Թագ. Ի. 6։

Վերակացու եղէց քաղաքիդ այդմիկ ապրեցուցանել զդա, վասն իմ եւ վասն Դաւթի ծառայի իմոյ. Ես. ԼԵ 35։

Այս հատուածներուն համեմատութենէն կ'երեւայ որ գէրասպարէլ կը նշանակէ “վերակացու լինել,” այսինքն “պահպանել, պաշտպանել, խնամակալել։” Բառը յայտնապէս կազմուած է գէր մասնիկով՝ ասպար “վահան” բառէն եւ ըստ այսմ ճիշտ նոյն կազմութիւնն ունի, ինչպէս պատսպարէլ հոմանիշը (տես Հիւբշ. Gramm. էջ 226)։ Բայց գէրասպարէլ հայացի ծնունդ չէ, այլ տառական թարգմանութիւն յն. ὑπερ-ασπίζω “պաշտպանել” ձեւին, որ նմանապէս ճիշտ նոյն կազմութիւնն ունի։

### 14. Դէ–ոժէռ։

Առաջաբերեցին դէ–ոժէռեւ–ոլ եւ խուլ տեսանելով Որդւոյ Կուսին. այլ բժշկեաց զնա, զի Աստուած էր։ Տիմոթ. էջ 220։

Ի Գերգեսացւոց գաւառի բժշկեաց Քրիստոս զվայրենապէս դիւաժետեալն։ Տիմոթ. էջ 294։

Դէ–ոժէռ կը նշանակէ "դիւահար". կազմուած է ժէռ առանձինն անգործածական արմատէն, որմէ ունինք նաեւ ոըէորոժէռոո–ըէ–ն, ոըոլոյնոժէռոո–ըէ–ն, ոխռոժէռ, նէնգոժէռ։ Տիմոթ. էջ 221 ունի եւ ըոոնոժէռ "լուսնոտ"։

### 15. Դոո–ղէլ։

Հինգ հացիւքն հինգ հազարս մարդկան յագեցուցանել եւ շնորհել Սամարուհեայն կենդանի ջուր, ուստի դոո–ղէլով նեմոյ գոյր ոչ եւս ծարաւել... աներկբայապէս է Աստուծոյ (գործ)։ Տիմոթ. էջ 93։

Հատուածս կ'ակնարկէ Սամարացի կնոջ պատմութիւնը եւ Քրիստոսի սա խօսքը. "Ամենայն որ ըմպէ ի ջրոյ յայդմանէ, միւսանգամ ծարաւէ. բայց որ ըմպէ ի ջրոյն զոր ես տաց նմա, մի՛ ծարաւեսցէ յաւիտեան" (Յովհ. Դ. 13)։ Համեմատութենէս եւ խօսքին ընթացքէն կ'երեւայ որ դոո–ղէլ կը նշանակէ "խմել։" Չեմ կարծեր որ կապ ունենայ դոյլ բառին հետ. ուստի ծագումն անյայտ է։

### 16. Երաոխանակընէկոլ։

Հովիւ ապրեցելոցն եւ փեսայ եկեղեցւոյ, երաոխանակընէկոլ քերովբեիցն եւ զօրավար հրեշտակաց (է Քրիստոս)...։ Տիմոթ. էջ 257։ Լուսանցքին վրայ մեկնուած է բառս նոռոռոլոր. ըստ այսմ ուղղելի է երաոանակընէկոլ եւ նման կազմութիւն ունի երաոանակոկոլ հոմանիշին հետ։ Երկուքն ալ

հետեւողութիւն են յն. ἡνίοχος “կառավար„ բառին, որ կազմուած է ἡνία “սանձ„ ձեւէն։

## 17. Երեսալ։

Քանզի խաչեցեալն եւ խոցեալ զկողն, յոր երեսասցին խոցօղքն, դատաւոր գնա տեսանելով յահագին աւուրն...։ Տիմոթ. էջ 236։

Հատուածս կ'ակնարկէ Յովհ. ԺԹ. 37 “Հայեսցին ի նա՝ յոր խոցեցինն„ (յունարէնին մէջ՝ ὄψονται εἰς ὃν ἐξεκέντησαν)։ Ասոնց համեմատութեամբ երեսալ կ'ստանայ “հայել, նայել„ իմաստը։ Այսպէս մեկնուած է նաեւ լուսանցքին վրայ։

Երեսալ կազմուած է երես բառէն եւ ստրկական թարգմանութիւն է յն. ὄψονται ձեւին. հմմտ. ὄψις “երես„։

## 18. Զայրայել։

Յայտնի այսուհետեւ Տէրն եւ մատնելով ոչ զայրայեաց ի մահուանէն, այլ յաւէտ մերկացաւ առ նա եւ հալածէր փախուցեալ զօձն, զի ոչ իբր մեռանելով Տէրն, այլ իբր զմահն յայս հալածելով։ Տիմոթ. էջ 16։

Զայրայել անծանօթ բառը կը նշանակէ “վախնալ„. հատուածն այսպէս կը թարգմանուի. “Այնուհետեւ յայտնուեցաւ Տէրը եւ մատնուեցաւ. բայց նա չվախցաւ մահէն, այլ...„։

## 19. Ըմպարան։

Առեալ հաց՝ եբեկ իւրովք ձեռօքն եւ գոհացեալ տայր աշակերտացն՝ ասելով. Այս է իմ մարմին, վասն ձեր բեկեալս՝ ի թողութիւն մեղաց. եւ զմպարանն (իմա՛ զըմպարանն) նմանապէս՝ ասելով. Այս է ըմպարանն, որ կտակ է յարեան իմում։ Տիմոթ. էջ 227։

Վերջին ընթրիքին պատմութիւնն է այս. ըմպարան կը նշանակէ "բաժակ„ եւ ծագած է ըմպել բայէն։

20. Ըստէմ։

Մարդկայնում բնութեանս յարմարական գոլ, ասէ, զ' ի վերայ Ղազարուն արտօսր, օտարացուցանելով զնա ամենեւին կարել յարուցանել զմեռեալն Ղազարոսն. իսկ միւսում բնութեանն շնորհէ զայս, զի յարտասուօղէ բնութեանն որպէս իւր թուի գործեցեալ. քանզի լեզու ասացիչն' "Ղազարէ, այսր, եկ արտաքս„ յատուկ մարդկայնոյ բնութեան է. ըստէմ արդեւք կարօտանայ սմա Աստուծոյն Բան պարտ էր ասել զայս աղանդել համարձակեալն։ Տիմոթ. էջ 102։

Ըստէմ թուի նշանակել "բայց, սակայն, միթէ, միայն թէ„։

21. Թնկճ։

(Կը նկարագրէ Թզենիին եւ կորեկին բուսաբերութիւնը եւ կը յաւելու)... եւ այգի իսկ այսպէս գեղեցիկս եւ տեսանել եւ ընդունելի է Թնկճն լինի նորա։ Տիմոթ. էջ 324։

Այղ ոչ Թնկճն է ասեն, այղ երկրի ամենայնն, եւ իբր Թանց սորա ոչինչ բերէ յիւրմէ։ Տիմոթ. էջ 325։

Այս երկու վկայութիւնները կը գտնուին երեք երես բռնող ընդարձակ հատուածի մը մէջ, որ Տիմոթէոս մէջ կը բերէ Ոսկեբերանէն։ Ձեռագիրը հոս բաւական եղծուած է եւ հրատարակիչները շատ տեղ բաւականացած են բազմակէտեր կամ հարցականներ դնելով եւ ընթերցուածները անորոշ թողելով։ Նոյն երեք էջ հատուածին մէջ՝ բաց ի Թնկճ-էն կը պատահին նաեւ քանի մը ուրիշ նոր բառեր, ինչպէս ղտտղքել, սոսր, հոգոգողան, ընչողան, խողճոնէ եւ վերոգէնել, որոնց վրայ տես

իւրաքանչիւրը իր տեղը։ Տարբերախտութիւն մ'է մեզի համար որ Ոսկեբերանի յիշեալ գրութիւնը հասած է նաեւ ոսկեդարեան գեղեցիկ թարգմանութեամբ, զոր մատնանիշ ըրաւ ինձ Պր. Ա. Ջամինեան (տես Յովհաննու Ոսկեբերանի Մեկնութիւն Թղթոցն Պօղոսի. Վենետ. 1862, հտ. Բ. էջ 444—448)։ Այսր համեմատութեամբ ահա կարելի է ոչ միայն գտնել վերի անծանօթ բառերուն նշանակութիւնը, այլ եւ լրացնել թերի կամ սխալ ընթերցուածները։ Այս վերջին կէտը գործիս նպատակէն դուրս ըլլալով՝ միջամուխ չեմ ըլլար անոր մէջ։ Երկու հատուածներուն համեմատութիւնը սքանչելի գաղափար կու տայ նաեւ այն մասին թէ առհասարակ ինչ ոճի հետեւեր է Ցիմոթէոսի թարգմանիչը եւ թէ ինչ ահռելի զանազանութիւն կայ ոսկեդարեան գեղեցիկ, ճաշակաւոր ու դիւրահասկանալի թարգմանութեան մը եւ յունաբան դպրոցի տգեղ, անճաշակ ու հանելուկային թարգմանութեան մէջ։ Հմմտ. վարը թիւ 77, վե-րոգէոէլ բառը։

Վերի երկու վկայութեանց մէջ ի ընճէն եւ ըննէճն յայտնապէս նոյն բառերն են. առաջին վկայութեան մէջ գրչութիւնը սխալ է, փոխանակ ըսելու ի ընճէն. ուղղականն է ըննէճ։ Ոսկեդարեան թարգմանութեան մէջ առաջին վկայութիւնը այսպէս է. "Եւ որթն որ այնչափ գեղեցիկ է ի տեսանել եւ քաղցր ի ճաշակել, յանպիտան ըննահաթէ լինի„ (էջ 446)։ Երկրորդ վկայութիւնը չունինք, որովհետեւ Վենետիկի ձեռագիրը պակասաւոր է։

Համեմատութենէս կ'երեւայ որ ըննէճ կը նշանակէ "թնահատ, խաղողի մէկ հատ կուտ„. կը ծագի ըէն "խաղողի կուտ„ բառէն։ Ոսկեբերանի թարգմանութեան մէջ ըննահաթ ձեւին տեղ ձեռագիր մը ունի հաթճէն (ուղղականը հաթէճ). այս բառը կազմուած է հաթ բառէն՝ էճ մասնիկով. եւ ճիշտ

Նոյն էճ մասնիկն է որ կը գտնենք նաեւ ընչէճ բառին վրայ. Հմմտ. նաեւ ուփէճ, ողունէճ, լուէճ։

## 22. Թուքընչուլ։

Որպէս Թուքընչուլ առ նախատանս, այսպէս եւ փչող Հոգւոյ իւրոց աշակերտացն։ Տիմոթ. էջ 258։

Թուքընչուլ "Թքակոծ եղած, երեսը թուք կերած, նախատուած"։

## 23. Ծամալ։

Գործածուած է երկու անգամ, բայց երկուքն ալ Ս. Բարսեղի Հոգւոյն Սրբոյ ճառէն առնուած հատուածի մը մէջ, հետեւեալ ձեւով.

*Տիմոթ. էջ 143.*

*Քանզի ոչ այսքան երկին եւ երկիր եւ երկարութիւն ծովուց, եւ ի ջուրսն պարենաբուծեալք, եւ ցամաքայինք կենդանեացն եւ բոյսք եւ աստեղք եւ օդ եւ ժամանակք եւ պճնեալ ամենայնիւ զարդարումն զգերունականական զօրութեանն բաղկացուցանեն. որք անկարելի զԱստուածն զանտեսանելին անախտաբար ի ծնոն մարմնոյ զերկախառնիլ մահուան, զի մեզ իւրովն ախտակրութեամբ զանախտութիւն շնորհիցէ։*

*Տիմոթ. էջ 192.*

*Քանզի ոչ այսքան երկիր եւ երկիր, եւ մեծութիւն ծովու. եւ ի ջուրս պարենաբուծեալքն, եւ ցամաքայինք կենդանեացն եւ բոյսք եւ աստեղք եւ օդք եւ ժամանակք, եւ պճնեալ ամենիւ զարդարումն զգերունական հարստութիւնն բաղկացուցէ. որ քանզի կարել զԱստուած զանտանելին անախտաբար ի ծնոն մարմնոյ զերկախառնել մահու, զի մեզ իւրով ախտակրութեամբ զանախտութիւն շնորհիցէ։*

Հայկաբան Պր. Ա. Ջամինեան բառս կ՚առաջարկէ կարդալ ծծմալ. երկաթագիր գրութեան մէջ Ծ եւ Ա շատ նման են իրարու։

## 24. Լուռ։

...Որդի (Աստուծոյ), որ յաստուածութեանն գահս ընդ նմա վայելելով, ի վերնոցն զօրութեանց երկրպագեալ, աղքատացաւ վասն մեր, եւ եղեւ լուռ Հօր մինչ մահու եւ մահու խաչին։ Տիմոթ. էջ 161։

Լուռ լինել «մտիկ ընել, հնազանդ գտնուիլ»․ կը նշանակուի նաեւ Առձ. Բառարանի մէջ՝ «լսել ու հասկնալ» իմաստով։ Ո– մասնիկը կը գտնենք նաեւ այլուր. ինչ. հօգուռ, կծուռ, տղուռ եւն։ Համմ. նաեւ Թիւ 61 ունկանել.

## 25. Լուսածել։

...զկաղս բժշկելով եւ զբորոտս մաքրելով, զկոյրս լուսածելով եւ զմեռեալս յարուցանելով... Տիմոթ. էջ 257։

Լուսածել «կոյր աչքը բժշկել»։

## 26. Խաղճուանք։

...Ջիղք եւ երակք եւ միս եւ ոսկերք եւ միզն եւ հագագապահք եւ յօդք եւ խաղճունք... էջ 324։

Հատուածս Ոսկեբերանէն է, որ Ոսկեդարեան թարգմանութեան մէջ հետեւեալ ձեւն ունի. «...Ջիլք, երակք, մարմին, ոսկերք, նեարդք, շնչերակք, յօդք, խաղճախուղճք» (էջ 447)։ Ասկէ կ'երեւայ որ խաղճուանք եւ խաղճախուղճք հոմանիշ են՝ «աճառ, կռճիկ» նշանակութեամբ։ Ասոնց հետ կը համեմատուին նաեւ խաղճմուանք կամ խաղճմուանք «մկանունք» Նիւս. կազմ. խաղճնել «թերամարս կամ անմարս» Նիւս. կազմ. բոլորին արմատն է խաղճ. ասկէ կը տեսնուի որ խաղճ-ուանք աւելի ուղիղ ձեւ է քան թէ խաղճմուանք կամ խաղճմուանք։

## 27. Խայփաղան։

Մի՞ խայփաղան ոչ է ի Գաղաադ եւ կամ բժիշկ ո՞չ է անդ. ընդէ՞ր ոչ վերելեաց բժշկութիւն դստեր ժողովրդեան իմոյ։ Տիմոթ. էջ 281։

Հատուածս առնուած է Ս. Գրքէն (Երեմ. Ը. 22), որ Եօթանասնից Թարգմանութեան մէջ հետեւեալ ձեւով է. “Միթէ դեղ ո՞չ գուցէ ի Գաղաադ, կամ բժիշկ ո՞չ կայցէ անդ. ընդէ՞ր ոչ եղեւ բժշկութիւն դստեր ժողովրդեան իմոյ„։ Այս համեմատութենէն կ'երեւայ որ խայփաղան կը նշանակէ “դեղ„։

Հայերէնի մէջ ունինք խայծղան ձեւ մը՝ որ կը մեկնուի “խանծիլ, խանձած լաթ՝ աբեթ պատրաստելու կամ վէրք փաթթելու համար„ Վատկ.։ Ըստ իս խայփաղան ասոր հնագոյն ձեւն է։ Խայփ եւ խայծ միեւնոյն արմատներն են. Համմտ. խայփ “խատուտիկ, պիսակաւոր„ Ծն. Լ. 33 եւ խայծիլ “խաղողին հասուննալով կարմրիլ սկսիլը„ Ամովս Թ. 13, խայծոփ „պիսակաւոր„ Ոսկ. Տիտ. եւն։ Ըստ այսմ խայփ = խայծ արմատին նախնական նշանակութիւնն է “խանձիլ, կրակին կամ տաքութեան առջեւ կարմրիլ„։ Խայծղան բառին մէջ (= *խայծաղան) ա ինկած է յետին ժամանակի ձայնափոխութեան օրէնքով. (ա)ղան մասնիկը կը գտնենք նաեւ յախ-ա-ղան բառին մէջ։

## 28. Խոշփալ։

Այս բառին համար ոսկեդարեան գրականութենէն մէկ վկայութիւն միայն ունինք. “խոշտացաք կաղացաք„ Կոչ. Բ.։ Սակայն այս վկայութիւնն ալ այնպէս անորոշ է, որ բառին թէ ձեւը եւ թէ նշանակութիւնը տարտամ կը մնայ։ Խոշփացած ձեւը կրնայ տալ թէ խոշփամ եւ թէ խոշփանամ ներկայ մը. ասոր համար ալ Նոր Հայկ. եւ Առձ. Բառ. կը նշանակեն կրկին ձեւերը։ Ցոյն օրինակը մեր վկայութեան դէմ կը հանէ միայն “կաղ եղաք„,

որով խոշտացուք բառը առանց բացատրութեան կը մնայ։

Տիմոթէոսի մէջ երկու անգամ կը պատահինք բառիս, էջ 135։ Հոս նախ մէջ կը բերուի Ծննդ. Լբ. 24, 30—31 համարներէն հատուած մը՝ Յակոբի մենամարտութեան վրայ, երբ Յակոբի ոտքին ջղերը կը պրկուին եւ նա կը սկսի կաղալ. "իսկ Յակովբ կաղայր բարձիւն իւրով„ (Եօթանասնից Թարգմանութեան մէջ "եւ նա կաղայր երթայր ի զստէ անտի„)։ Քիչ մը վարը կ'ըսէ Տիմոթէոս. "որպէս Յակովբ խոշտոյր բարձիւ իւրով... զայս կարծեմ զեկուցանել առ ի խոշտալն Յակովբայ բարձիւ իւրով„։ Ասոնց համեմատութիւնը այլ եւս կասկած չի թողուր բառին նշանակութեան վրայ. իսկ երկու բայաձեւերը (անկատար եւ անորոշ) կը ցուցնեն թէ բառիսներկան խոշտամ է եւ ոչ *խոշտանամ։

Տիմոթ. էջ 142 ունի նաեւ բայիս անցողականը. "Մի երբեք զխորհուրդն խոշտացուցես՝ արիւն Աստուծոյ եւ ախտակրութիւն լսելով եւ մահ. մի՛ ուրեք վայրածեսցիս այնպէս իբր Աստուծոյ խօսնակ, այլ անպատկառապէս եւ անյերկուաբար կեր զհացն, ա՛րբ զարիւնն„։ Խոշտացուցանել հոս կը նշանակէ "խղճել, խորշել, վախնալ, զզուշանալ„. բայց ըստ իս վերինին մէկ նոր առումն է միայն։

## 29. Խոտոռնիան։

Զ՛ ի ձեռն մարգարեիցն խոտոռնիանս նորա լցեալ ուղղութեամբք ներմարմնական իւրոյ գալստեանն։ Տիմոթ. էջ 237։

Խոտոռնիան նոյն է ընդ "խոտոռումն„։

## 30. Խրտոյն։

Զի մանկանց եկեղեցւոյ յայտնիս կացուսցուք ծածկեցելոյ վնասակարութեանն, առ սպանումն անձանց զխորամանկութիւնն, առ ի յոչ՝ զոք ըն-

գունակ կամ աշակերտ սատանայական խրտուն (?) եղանիլ, այդ իւրաքանչիւր ոք փախնուլ ի սատա-կիչ նոցայն վարդապետութենէ: Տիմոթ. էջ 36:

Խրտուն սեռական ձեւ է. ուստի ուղղականը կրնայ ըլլալ խէրտ, խուրտ, խրէտ կամ խրուտ, համանաբար "աղանդ, մոլորութիւն" նշանակու-թեամբ: Բայց կրնանք նաեւ ուղղել խրտուն "կրթ-թութիւն, դաստիարակութիւն, խորհուրդ" նշա-նակութեամբ:

### 31. Ծպէլ:

Այս ձեւը գոյութիւն ունի միայն անծպէլէ ա-ծանցին մէջ. "առ մեծագոյն մտահաճութիւն հիմ-նացելոցն ի վերայ անծպէլէ վիմին ուղղափառի հա-ւատոյ եւ առ պատկառութիւն նախասացելոց ա-ղանդոցն": Տիմոթ. էջ 281:

Կը նշանակէ "անխախտելի". Առձ. Բառ. ունի արդէն ծպէմ "խախտիլ" հետաքրքրական ձեւը:

### 32. Կողողանալ:

Եւ ի վերայ մկանանց ծովու ճեմեալ՝ ոտիցն ոչ գնացելոց, իսկ զկոհակացն այսմունս վերաստա-տելով մրրկին կողողանալ, աներկբայապէս է Աս-տուծոյ (գործ): Տիմոթ. էջ 93:

Կողողանալ կը կազմէ լծորդ եւ հոմանիշ ձեւ մը խողողանալ բառին. կ եւ խ ձայներուն լծորդու-թեան համար կան դեռ ուրիշ մի խումբ օրինակներ, որոնց վրայ տես ՀԱ. 1909, էջ 159—160:

### 33—36. Կարաւոր, չարաւորէլ, չարաւորաքոյն, չա-րուՈնէան:

Այս բոլորը կ'ածանցին չար "ոյժ, զօրու-թիւն, կարողութիւն" արմատէն. ահա անոնց վկայութիւնները:

1. "*Աւն կ-ր---որէ բանիւք եւ գործովք... այր ըստ ճշմարտութեան կ-ր---որ եւ փրկանիչ գոյր Իսրայելի*": *Տիմոթ.* *էջ* 234: *Անկա կ'ակնարկէ Ղուկ.* *ԻԴ.* 19 "*այր մարգարէ, հզօր արդեամբք եւ բանիւք առաջի Աստուծոյ*" *եւն հատուածը*:

*Կ-ր---որ կը նշանակէ* "*ուժեղ, զօրաւոր*":

2. "*Ցայնժամ կ-ր---որ-ք-յն զանձնն գտանեին եւ քաջապգագոյնք առ վասն Քրիստոսի պատերազմի եւ ուժեղագոյնք*". *Տիմոթ.* *էջ* 250:

*Կ-ր---որ-ք-յն* "*աւելի ուժեղ, հզօր*":

3. "*Շիջուցին զկ-ր--Բի-Ն հրոյ, փախեան զբերանս սրոյ, կ-ր---որեցա-Ն ի տկարութենէ. զի յորժամ տկարանային ի հալածմունս, յայնժամ կարաւորագոյն զանձնն գտանեին*": *Տիմոթ.* *էջ* 250:

*Կ-ր---որէլ* "*ուժ առնել, զօրանալ*":

4. "*Խաչեցեալ աշա ի տկարութենէ, իսկ կեցեալ է կ-ր--Բէնէ աստուածայնւոյ*". *Տիմոթ.* *էջ* 258 (*հմմտ.* *Բ.* *Կոր.* *ԺԳ.* 4. *զի թէպէտ եւ խաչեցաւ ի մերմէ տկարութենէ, այլ կենդանի է զօրութեամբն Աստուծոյ*):

"*Քանզի ոչ մարդոյ հնազանդին երկնային պետութիւնք եւ իշխանութիւնք եւ կ-ր--Բի-Ն+, այլ Աստուծոյ*". *Տիմոթ.* *էջ* 268:

"*Հոգին Սուրբ վերեկեացէ առ քեզ եւ կ-ր--Բի-Ն Բարձրելոյն հովանասցի քեզ*". *Տիմոթ.* *էջ* 269 *եւ* 292. (*հմմտ.* *Ղուկ.* *Ա.* 35. *Հոգի սուրբ եկեսցէ ի քեզ եւ զօր--Բի-Ն Բարձրելոյ հովանի լիցի ի վերայ քո*):

*Ուրիշ վկայութիւններ տես էջ* 235, 236, 237, 250, 324 *եւն*: *Ասոնցմէ պարզ է որ կ-ր--Բի-Ն* "*զօրութիւն*":

## 37. Կէն--ն:

*Թագաւորք երկրիս յումէ՞ առնուն զհարկս կամ զկէն--ն, յորդւո՞ց իւրեանց, եթէ յօտարաց*: *Տիմոթ.* *էջ* 289:

Հատուածս առնուած է Ս. Գրքէն (Մատթ. ԺԷ. 24), որ Եօթանասնից թարգմանութեան մէջ հետեւեալ ձեւն ունի. "Թագաւորք ազգաց յումէ՞ առնուն զհարկս կամ զհաս, յորդւո՞ց իւրեանց թէ յօտարաց": Յունարէն բնագիրը նոյն տեղը՝ համաձայն Տիմոթէոսի՝ այսպէս կ'ըսէ. "οἱ βασιλεῖς τῆς γῆς ἀπὸ τίνων λαμβάνουσι τέλη ἢ κῆνσον; ἀπὸ τῶν υἱῶν αὐτῶν, ἢ ἀπὸ τῶν ἀλλοτρίων.; Ասոնց համեմատութենէն կը տեսնուի որ հասն յն. κῆνσον ձեւէն փոխառեալ է՝ "հաս, հարկ, տուրք" նշանակութեամբ (ուղղականը κῆνσος, լատ. census):

## 38. Հափափաղան:

Ո՛չ բեւր զանազանութիւնք ի մարմնի՝ ձեւոցն, մեծութեանցն, որակութեանցն, դրութեանցն (տպուած է "գրութեանցն"), կարութեանցն, յարմարանացն՝ ջիղք եւ երակք եւ միս եւ ոսկերք եւ միզն եւ հափափաղան+ եւ յօդք եւ խաղճունք, եւ որքան այլք սոյին յոլովք ճշգրտաբանեն մանկունք բժշկացն: Տիմոթ. էջ 324:

Կը գտնուի Ոսկեբերանէն առնուած հատուածին մէջ, որուն Ոսկեդարեան թարգմանութիւնը հետեւեալն է. "Ո՞չ ապաքէն իսկ բիւր որոշմունք են ի մարմնի, ձեւոց, մեծութեանց, զօրութեանց, դրութեանց, ուժոյ, յարմարութեանց. ջիլք, երակք, մարմին, ոսկերք, նեարդք, շնչերակ+, յօդք, խաղճախուղճք, եւ որչափ այլ ինչ քան զնոյնս ճշդիւ համարին արուեստագէտք բժշկաց" (Ոսկ. էջ 447):

Հափափաղան կը նշանակէ ուրեմն "շնչերակ": Բառիս հետ հոմանիշ է շնչաղան, որ Տիմոթէոսի մէջ՝ նոյն էջ, քիչ մը վարը յիշուած է՝ հետեւեալ ձեւով. "Ի՞բր խոնաւն եւ գողտրն եւ չոր եւ խոշոր մածանի ոսկրն. Իբր ի ջերմ եւ խոնաւ միացեալ,

իբր ի ցուրտ եւ ի գոլոյ ջրոյն, իբր ի ցուրտ եւ ի խոնաւ շնչափողացն»: Ոսկեդարեան թարգմանութիւնը նոյն տեղն ունի. «Զիա՛րդ որ խոնաւն է եւ լոյծ եւ ցամաք եւ ցուրտ՝ մածնու լինել ոսկր. ո՛րպէս ջերմն եւ խոնաւն միացեալ, զիա՛րդ ի ցուրտ եւ ի լոյծ ջիլք, ո՛րպէս ի ցուրտ եւ ի խոնաւ փողքն» (Ոսկ. էջ 447): Շնչափողաց բառին դէմ հոս գրուած է փող, սակայն ասիկա ըստ իս յետին սրբագրութիւն է, ինչպէս եղած է նաեւ Ոսկեբերանի Նախորդ վկայութեան մէջ, ուր ծանօթ երեք ձեռագիրներէն երկուքը՝ հակառակ յունականին ունին փող (Համմտ. էջ 447 գրուած ծանօթութիւնը):

Վերի վկայութիւնը երկու ուրիշ նոր բառեր ալ երեւան կը հանէ. այն է գոլոյ «լոյծ», եւ խոշոր «ցուրտ», որոնք նոր առումներ միայն ըլլալով՝ առանձնապէս յիշել հարկ չհամարեցի:

39. Համօրըղակէլ:

Արեգակն խաւարեցաւ, վարագոյր ի բաց պատառեցաւ եւ երկիր սասանեցաւ եւ վէմք հերձան. եւ պարզաբան ասել, ամեն արարածս քստմնեաց, զայրակցեալ օրինակ իմն ըհամօրըղակէլոցն ի փայտի բեւեռեալ զարարիչն ամենայնի: Տիմոթ. էջ 103:

Կ'երեւայ թէ բառս հասկնալու է ըհամօրըջակէլոցն. որով հատուածը կրնայ թարգմանուիլ այսպէս. «...բոլոր արարածները քստմնեցան իբր թէ զայրանալով անոնց դէմ որ համարձակած էին փայտի վրայ բեւեռելու ամէնուն արարիչը»:

40. Հմայանալ, Նմայութիւն:

Հմայ արմատը որ ծանօթ է մեզ «կախարդութիւն» իմաստով, Տիմոթէոսի մէջ շատ տարբեր նշանակութիւն ունի: Բազմաթիւ վկայութեանց մէջէն կը յիշենք հետեւեալները.

*Նորին (Երանելւոյ Կիւրղի եպիսկոպոսապետի) ի մեկնութենէ Հռոմայեցւոցն.* էջ 93։

*Բաւականացելոց որքոց Հռոմայ–Բէանն երեքարիւրոցն եւ տասնեւութից, կարգալ առ ի գիտութիւն եւ հաստատել ուղիղ եւ փրկականաւ հաւատով.* էջ 152։

*Իսկ մեկնութիւն բարեպաշտ Նախանձոյ փրկական Հռոմայ–Բէան փափագօղացն զմտածութիւն (գրեալ Կիւրղի Աղէքսանդրացւոյ).* էջ 162։

*Վասն սահմանելոյ զնոսա յԵփեսոս՝ մի իշխել խնդրել կամ աղանդել աւելի ինչ ի սահման հաւատոց, բայց որքոյ Հռոմայ–Բէանն երեք հարիւր եւ ութեւտասնից որքոցն հարանց. զայս ոչ անսանելով, վասն զի Հռոմայ–Բէ–նն կամ զորքոց հաւատ նորոգեցին.* էջ 163։

*Նորին ի մեկնութենէ որքոյ Հռոմայ–Բէանն.* էջ 168։

*Քանզի ո՛չ սուրբ գրութիւնն ճառապէս եւ ինքնաքառութեամբ նզովեաց զնախասացեալսն, եւ ոչ որքոցն հարանց Հռոմայ–Բէ–ն.* էջ 184։

*Մատնի (Յիսուս) Պիղատոսի իբր մարդ, այլ Հռոմայանոյ սորա կնոջն, քանզի Աստուած էր.* էջ 229։

*Ամենեքեան իսկ հարքն մեր եւ եպիսկոպոսքն ... յԵփեսոս ... սահմանեցին ո՛չ ումեք արժան գոլ յաւելուլ ինչ որքում Հռոմայ–Բէանն.* էջ 252։

*Զի ոչ պարտ սահման միւս հաւատոյ ընդունել, քան յերեքհարիւր տասն եւ ութիցն սուրբ Հռոմայ–Բէանն, որում եւ հետեւեցան սուրբ հարքն.* էջ 253։

*Ի՞բր եղբայր մեզ Հռոմայեցւոց, այլով եւ օտարաւ քան զմերս վարեցեալ մարմնով.* էջ 279։

*Քանզի անյեղլի Բանին բնութիւն. եւ եթե Հռոմայեցւոց մեզ եղբայր, ի՞բր Մէնածնի ունի փառս.* էջ 297։

Ասոնց մէջ կախարդական իմաստի նշոյլն անգամ չկայ. այլ ընդհակառակը գործածուած են սուրբ բաներու համար. հմայ–ութ կամ հմայու–թի–ն կը նշանակէ “Ս. Հարց գրուածք„, իսկ հմայել “տեսլեամբ երեւիլ, մեկուն յայտնուիլ„: Տես նաեւ վարը նշան–ա–որ–ու–թի–ն:

Այս երկու նշանակութիւններն ըստ իս աւելի հին ու աւելի նախնական են քան “կախարդութիւն„ը եւ ցոյց կուտան վերջիններիս ծագման ճանապարհը: Հմայու–թի–ն՝ պարզապէս “գրութիւն„ իմաստն ունէր նախ եւ յետոյ միայն յատկացուեցաւ կախարդական գրութեանց, ինչպէս կը ցուցնէ հմայեակ բառը՝ “կախարդական բժժանք, պահպանակ, համայիլ„ նշանակութեամբ. ասկէ ելքն ալ պարզապէս “կախարդութիւն„: Հմայել “մեկուն յայտնուիլ„ նշանակութիւնն ալ դիւթական կամ կախարդական կանխատեսութեան նախանշանակութիւնն է:

Մեր հմայեակ բառին հետ այս տեսակէտով համեմատելի է արաբ. حمائل ḥamāil որ կը նշանակէ “հմայական պահպանակ, amulette„, բայց Արարատեան քրդերու բարբառին մէջ (ḥmayil) առած է “կրօնական գիրք„ նշանակութիւնը:

## 41. Հրամն:

Եւ որպէս ասաց յԵլան. “Զենցեն զնա առ երեկս„. զայս յայսմ տեղւոջ սարասեաց ասելով՝ ի մէջ երեկորնայ, վասն զի ոչ ի կատարելոյ, եւ ոչ ի ծայր երեկորին, այլ ի միջոցի հրամնին ախտական զենանիւր, զի ի նմանէ տօն անխմորիցն կոչեսցի հինգետասաներորդն եւ գիշերւոյն անդէն մատլոյ ուտից: Տիմոթ. էջ 320:

Առձեռն բառարան գիտէ բառս հրամն+ ձեւով՝ առանց վկայութեան եւ “երեկոյեան նախաճաշիկ, նախընթրիք„ նշանակութեամբ: Արդի

գաւառականներէն ունինք Հրամոյ՝ Մշոյ բարբառով «երեկոյեան նախընթրիք, արեւելեան ժամը իննին ժամանակները», Խիանի բարբառով «ճաշ, կէսօրուան կերակուր», Հրամէտան՝ Նոր-Բայազիդի ենթաբարբառով «ճաշէն ետքը եղած ժամանակը. Nachmittag»։

Առձեռնի տուածը յոգնաձեւ է. Տիմոթէոսի Հրամէնէն սեռականը՝ կ՚ենթադրէ ուղ. Հրամէն, որ Հայ լեզուի ուղղագրական օրէնքներուն աւելի համաձայն է քան Հրամէն-ք։

### 42. Գլէնոփ։

Սփածանի գլէնոփէն եւ լուանայ զոտս իւրոցն ծառայից. Տիմոթ. էջ 227։

Մեր գլէնջոփ բառն է եւ ուղղակի փոխ առնուած է յն. λέντιον հոմանիշէն։

### 43. Գլ-բեղղոն։

Եւ հաւանեցան հետեւել վարդապետութեան սրբոցն հարանց եւ խոստովանեցին մի գոլ բնութիւն Աստուծոյն Բանի մարմնացելոյն. եւ ընկալեալ եղեն ապաշխարելով ի ժողովոյն որ յԵփեսոս։ Եւտիքէս իսկ ի ձեռն տալով գլ-բեղղոն ժողովոյն, երդնլով ի ձեռն գլբեղղոնն զսրբոյ Երրորդութենէն հաւանել վարդապետութեանց սրբոցն հարանց, ընկալեալ եղեւ եւ սա։ Տիմոթ. էջ 146։

Լուսանցքին վրայ մեկնուած է բառս «ձեռնարկ». փոխ առնուած է յն. λιβέλλον հայցական ձեւէն, որ լատիներէն libellus «գրքոյկ. 2. գրուածք, գրութիւն. 3. տոմսակ, յայտարարութիւն» բառին տառադարձութիւնն է։ Ըստ այսմ ուղիղ ձեւ է գլբեղղոն։

### 44. Մանկաւորել:

Ո՛չ միայն իսկ հաւատոյ յառաջ գալ ոչ կամեցան, այլ եւ պատրութիւնս գտին եւ չարագործութիւնս մանկաւորեցին եւ ստեղծին յիմարս եւ անուսմունս խնդիրս առ ի մոլորութիւնս բազմաց: Տիմոթ. էջ 158:

Իսկ նզովեալք զրպարտեն զնզովիչսն զնոսա՝ զսուրբս զհարսն մանկաւորաղէս, զի հաւանեցուսցեն զպարզագոյնսն: Տիմոթ. էջ 185:

Մանկաւորել «խաբել, նենգել, խարդախել», մանկաւորաղէս «խաբեբայութեամբ»:

Մանկաւոր-է ձեւ մը գործածուած կը գտնենք նաեւ Նուագր. իզ, բայց այնպէս՝ որ յայտնի չէ թէ մանկաւորեմ բային ներկ. եզ. երրորդ դէմքն է, թէ մանկաւոր է (ստորոգելի եւ էական բայ): Տիմոթէոսի առաջին վկայութիւնը կը հաստատէ բային գոյութիւնը:

### 45. Մեղկիլ, Մեղկութիւն:

Հայերէնի մէջ այս բառերը ծանօթ են «թոյլ, թուլանալ» նշանակութեամբ. Տիմոթէոս ալ գիտէ այս նշանակութիւնը (ինչ. էջ 248. Քանզի ուսան ի Քրիստոսէ՝ ո՛չ մեղկանալ ի փորձութիւնս, այլ հսկել եւ աղօթել). բայց տարբեր իմաստով կը գործածէ հետեւեալ վկայութեանց մէջ:

Սա զմեզս մեր բերէ եւ յաղագս մեր վշտանայ. եւ մեք համարեցաք զնա գոլ ի ցաւս եւ ի վէրս եւ ի հիւանդութեան. իսկ ինքն վիրաւորեցաւ վասն մեղաց մերոց եւ մեղկացեալ է վասն անօրէնութեան մերոյ. Տիմոթ. էջ 29: Նոյնը երկրորդ անգամ էջ 275 «... եւ մեղկեալ է սակս ամպարշտութեան մերոյ»: — (Հատուածս առնուած է Եսայեայ ԾԳ 4—5 համարներէն, որ մեր թարգմանութեան մէջ այսպէս է. Նա զմեզս մեր բառնայ եւ վասն մեր չարչարի, եւ մեք համարեցաք զնա ի ցաւս եւ ի

հարուածս եւ ի չարչարանս իբրեւ յԱստուծոյ։ Բայց նա վիրաւորեցաւ վասն մեղաց մերոց եւ ապաժեցաւ վասն մերոյ անօրէնութեանց)։

Մարդ ի հարուածս ելով եւ գիտելով բերել Ճեղկօ-Բէ-Ն. Տիմոթ. էջ 29։ Նոյնը էջ 275 քիչ մը տարբեր ձեւով. Մարդ ի հարուածս ելով եւ գիտակ բերել Ճեղկօ-Բէ-Ն։ Նոյնը կ՚ակնարկէ նաեւ՝ "իսկ Յիսուս Քրիստոս կրեաց, եւ կրեալ կեցոյց զմեզ. Չնեցաւ գիտակն բերել զՃեղկօ-Բէ-Ն„. Տիմոթ. էջ 79։ Բոլորն ալ առնուած են Եսայի ԾԳ 3 համարէն, որ սա՛պէս է մեր թարգմանութեան մէջ. "Այր մի ի հարուածս, եւ գիտէ համբերել ցաւոց„։

Եւ նոցա իշխանութիւն ոգւոց անմաքրոց, իբր զի հանել զնոսա եւ բժշկել զամենայն հիւանդութիւն եւ զամենայն Ճեղկօ-Բէ-Ն. Տիմոթ. էջ 286։ Ասոր հետ հմմտ. էջ 24 "Բժշկելով զամենայն հիւանդութիւնս եւ զամենայն Ճեղկօ-Բէ-Ն եւ կենագործելով զմեռեալս„։ — Առնուած է Մտթ. Ժ 1 համարէն, որ մեր օրինակին մէջ սա՛պէս է. "Եւ նոցա իշխանութիւն այսոց պղծոց հանել զնոսա եւ բժշկել զամենայն ցաւս եւ զամենայն հիւանդութիւնս„։

Այս բոլորը կը ցուցնեն որ Ճեղկօ-Բէ-Ն կը նշանակէ "ցաւ„, Ճեղջիլ "ցաւ քաշել, ցաւ կրել„։ Նշանակութեան եղանակաւորման համար հմմտ. արեւելեան հայերէնի Բոյլ էմ "տկար եմ, քիչ մը հիւանդ եմ„ ձեւը։ Սորկական հետեւողութիւն է յն. μαλακία "թուլութիւն, մեղկութիւն„, μαλακίζω "մեղկանալ, թուլնալ„ բառերուն, որ գործածուած են յոյն բնագրին համապատասխան տեղերը։

## 46. Յամր։

Հաւատարիմ իսկ եւ բարեպաշտ եւ նախանձ բարեպաշտութեան ունելով զՄարկիանոս, զե-

ղեալն Թագաւոր, վերաքարոզեն. յոմն եւ Հայիւ յԱստուծոյն զԹագաւորութիւնն վիճակեալ... Տիմոթ. էջ 150։

Յոմն բառը՝ որ իր ծանօթ նշանակութեամբ չի յարմարիր հոս, լուսանցքին վրայ մեկնուած է "երեկոյ"։ Այս նշանակութիւնը կը հաստատէ քանի մը տող վարը՝ նոյն խօսքին երկրորդ կրկնութիւնը, ուր այս անգամ յոմն բառին տեղ երեկոյ ձեւն է գրուած. այսպէս. "մինչ զի երեկոյ եւ Հայիւ Մարկիանոս Թագաւորեաց"։

## 47. Յօժէլ։

Տիմոթէոսի մէջ այս բայը երկու վկայութեանց մէջ երկու տարբեր նշանակութեամբ գործածուած է։ Առաջինն է էջ 271. "Քանզի սաստ ուրեմն Փրկչին աշակերտ յաղագս սասցելոցն ի սրբոց մարգարեիցն՝ յաղագս ամենեցուն մեր Փրկչին Քրիստոսի, որ այժմ յայտնեցաւ ձեզ ի ձեռն աւետարանելոցն առ ձեզ Հոգւով Սրբով, առաքելոյ յերկնուստ, յոր ցանկան հրեշտակք յօժէլ։ Քանզի եւ որք յօժեցան՝ զմեծն բարեպաշտութեան խորհուրդ իմացեալք, յորժամ ծնաւ ըստ մարմնոյ Քրիստոս, ... սահին. Փառք ի բարձունս Աստուծոյ"։

Հատուածիս մէջ ակնարկուած առաքելական խօսքն է Ա. Պետր. Ա 12, որ մեր Թարգմանութեան մէջ հետեւեալ ձեւն ունի. "Որոց եւ յայտնեցաւ իսկ. զի ո՛չ թէ անձանց, այլ մեզ մատակարարք լինէին, նոցին՝ որք այժմ պատմեցան, այնոքիւք որք աւետարանեցինն ձեզ Հոգւովն սրբով որ առաքեցն յերկնից, ուր ցանկային դիտանել գոնեայ ընդ աղօթ հրեշտակք"։ Վերջին ստորագծեալ մասը յունարէնին մէջ սա ձեւով է. εἰς ἃ ἐπιθυμοῦσιν ἄγγελοι παρακύψαι. Ըստ այսմ յօժէլ կը փոխանակէ հայերէնի դիտանել ընդ աղօթ ձեւը,

բայց իմաստով անկէ բոլորովին հեռու, թարգմանութիւնն է յն. παραχύψαι ձեւին, որ կը նշանակէ 1. ծռիլ կարկառիլ բանի մը նայելու համար. 2. ծածուկ նայիլ, ծկլալ. 3. հարեւանցի ակնարկ մը նետել„։

Երկրորդ վկայութիւնն է էջ 99—100, ուր կ'ըսէ. "քառօրեին ահա թաղման, արտաքս յառնել առ հրաման ձայնին. կամ զփայտէ յառէլ եւ ի տուրնջենէ ի գիշեր փոխիլ զտառս (իմա զտառերս) ամենայն„։ Հոս յառէլ "կախուիլ„ նշանակութիւնն ունի։ Այս բառիս համար հրատարակիչները սա ծանօթութիւնը կուտան թէ "լուսանցքում մի անվերծանելի բառ, որի տառերն են "խե ... անպնդել„։ Այս անվերծանելի բառը անշուշտ յառէլ բառին մեկնութիւնն է եւ թուի թէ պէտք է կարդալ "կախել անպնդեալ„, այն է "առանց կապուելու կախուիլ, գամուած ու կախուած մնալ„։

## 48. Ցերկաշարութեն։

Քանզի այղ գոյութիւն Ադամայ՝ յերկրէ ստեղծեցելոյ, իսկ այղ Եւայի ի կողէ եղելոյ, եւ այղ Հաբելի՝ զի ղ ցերկաշարութենէ. Տիմոթ. էջ 192։

Ըստ իս բառին վրայէն ջնջելու է աւելորդ ղ նախդիրը. ցերկաշարութենէ բացառական է Երկաշարութեն բառէն՝ որ թէեւ կազմութեամբ քիչ մը մութ է, սակայն յայտնի կ'երեւայ որ Երկ "երկունք, տղաբերքի ցաւ„ բառէն կազմուած է եւ կը նշանակէ "երկանց ծնունդ„։

## 49. Նախակ։

Ասէր Պետրոս թողեալ զամենայն եւ հետեւեալ Որդւոյ Մարդոյ մեծասքանչիւքն, եւ հարցանէր՝ զի՞նչ վասն այսորիկ ձիրէ նոցա. իսկ Որդի

Մարդոյ խոստացաւ Նոցա զնախակոն եւ զգերափառսն ձիրել ի հանդերձելում յաւիտենին: Տիմոթ. էջ 222:

Արհամարհեցան հարանցն աղանդք, առաքելական աւանդութիւնք անարգեցան, մանկագունացն մարդոց գիւտք յեկեղեցւոջ քաղաքաւորեն. արուեստաբանեն այսուհետեւ, ո՛չ աստուածաբանեն մարդիկ. աշխարհի իմաստութիւն զնախակոն բերէ, մերժելով զպարծանս խաչին: Տիմոթ. էջ 255:

Նախակոն կը նշանակէ "առաջնակարգ դիրք ընտիր պաշտօն":

## 50. Նաստղէլ:

Վնասամիտ ասեն զՆեստորիոս, իբր ոչ կարացեալ թաքուցանել զիւրեւ վնոցայն ամպարշտութիւն, այլ համարձակութեամբ զնա քարոզել: Քանզի ոչ իբր հերձուածող զիւրեանցն վարդապետ այսպէս անուանեցին, այլ իբր ոչ զօրեալ Նաստղէլ զըստինքեանն կեղծաւորութեամբ, որպէս եւ ինքեանք արարին: Տիմոթ. էջ 164:

Նաստղէլ կը նշանակէ "ծածկել, թաքցնել": Տիմոթէոս երկաբնակները Նեստորի հերձուածին համամիտ կը համարէ, սա՛ տարբերութեամբ միայն որ Նեստոր յայտնի համարձակութեամբ քարոզեց թէ Քրիստոս մարդ է, իսկ երկաբնակները ծածկեցին: Երկաբնակները, կ'ըսէ Տիմոթէոս, հերձուածող կոչեցին Նեստորը՝ ո՛չ թէ անոր համար որ իրօք հերձուածող կը համարէին զայն, այլ անոր համար որ Նեստոր չկրցաւ ծածկել այն ինչ որ իրենք կեղծաւորութեամբ ծածկեցին:

## 51. Ներշրջական:

Էջ 264 Տիմոթէոս մէջ կը բերէ Հռոմի Յուղիոս եպիսկոպոսապետին "Ներշրջական թուղթ"ը, որ կը սկսի այսպէս. "Ամենայն ուրեք եպիսկոպոսաց,

*բոլորական եկեղեցւոյ սիրելեաց եղբարց, Ցուղիա՝ Տերամբ խնդալ„: Թուղթը հովուական կոնդակ մ'է, որմէ յայտնի կ'երեւայ որ Ներշէշէ-կան Բո-ղն արդի "շրջաբերական„ի իմաստն ունի:*

*Բառական թարգմանութիւն մը յուն. εγ-κύκλιος՝ "շրջաբերական„ բառին: Ծ. Խմբ.*

## 52. Ներսոյց:

*Այղ եթ՝ ոչ աղանդաբար ասացան ի սրբոցն հարանց, ո՛չ եւս հանդերձ նզովիւք սահմանեցին. քանզի զայս ուսան սուրբ հարքն յերանելւոյն Պօղոսէ առնել Ներսոյց յաղագս հաւատոյն բանից եւ ի սրբոցն հարանց, որք ի Նիկիա: Տիմոթ. էջ 183:*

*Ներսոյց կը նշանակէ "ընդունուած կամ ընդունելի դարձած ճշմարտութիւն„, առնել Ներսոյց "ընդունիլ, ներս առնել, գրքի մը կամ դաւանութեան մէջ մտցնել„:*

## 53. Նհատ:

*Դարձեալ ոչինչ Նհատ զնա եւ ի հանդիտութեան եւ ի նմանութեան Հօր զԱստուածն Բան եւ ի մարդկութենէ իւրմէ չափոց ճանաչեմք: Տիմոթ. էջ 106:*

*Քանզի որպէս ի կուսական ապաւարտակացն յառաջ եկեալ մարդ ոչինչ Նհատ Աստուած ի ձեռն ճահագործութեանն ճանաչիւր. Տիմոթ. էջ 160:*

*Թեպէտ եղեւ մարմին, ոչինչ Նհատ է Աստուած. Տիմոթ. էջ 297:*

*Ասիցի արդեւք ոչինչ Նհատ ըստ նատանութեան տնօրինութեանն: Տիմոթ. էջ 179:*

*Քանզի պահէ երկաքանչիւր բնութիւն աննհատաբար զինքեանն յատկութիւն: Տիմոթ. էջ 69:*

*Նհատ "պակաս, թերի„, աննհատաբար "աննուազաբար„ (երկրորդը այսպէս մեկնուած կը գտնենք նաեւ լուսանցքին վրայ):*

*Հմմտ. ընդ-հատ "տարբեր„:*

### 54. Ններամիտ։

Եւ ունակութեամբ առ մեզս հաւատարութեան եղեալ (Քրիստոս) մարդ՝ զներմարդութիւն իւր զներանձնաւոր եւ Ններամիտ տնօրինելով։ Տիմոթ. էջ 31։

Ներանձնաւոր բառարաններուն մէջ մեկնուած է “շնչաւոր„. Ններամիտ Տիմոթէոսի լուսանցքին վրայ բացատրուած է “մտաւոր„. սակայն այս բացատրութիւնը ըստ իս սխալ է, իբրեւ հակառակ ուղղափառ քրիստոնէական վարդապետութեան։ Քրիստոս՝ թէեւ մեզ հաւասար շնչաւոր մարդ դարձաւ, բայց մեր մտաւորութիւնը չժառանգեց։ Կ՚առաջարկեմ Ններամիտ բառը ուղղել Ներամիտ եւ տալ անոր “բանական, խելացի„ նշանակութիւնը, ինչպէս ունին բառարանները։

*Ապահովապէս նմանցուած յուն. ἔν-νοος, ἔν-νους “խելացի, մտացի, բանաւոր„ բառին:*

### 55. Նշանաւորաբնին։

. . . զայսոսիկ քարոզէ եւ ուսուցանէ եւ աւանդէ, իբր ի բերան ստացեալ հաւատ առաքելական՝ ձայնակից ելով Նշանաւորաբնեան ի Նիկիա ժողովոյն։ Տիմոթ. էջ 259։

Լուսանցքին վրայ մեկնուած է բառս “հմայութիւն„. սակայն ասիկա ոչ թէ “դիւթութիւն, կախարդութիւն„ մտքով իմանալու է, այլ ինչպէս վերը ցուցուցինք, “գրութիւն„ իմաստով։ Նշանաւորաբնին “գրութիւն, գրուածք„ իմաստ կը գտնենք նաեւ նշանաւորել “գրել„ բառին մէջ, զոր ունի Առձ. Բառ.։

### 56. Նոճա։

Այս ձեւը բաւական յաճախադէպ գործածութիւն ունի Տիմոթէոսի մէջ (հմմտ. օրինակի

համար էջ 236), փոխանակ ըսելու նոյա. Թէեւ այս վերջինը առաջինէն շատ աւելի սովորական է իրեն։

## 57. Շեղջ։

Հպեցաւ ձեռամբ մարդկայնով առ շեղջ Որդւոյ այրւոյն ի քաղաքի կոչեցելում Նային, եւ հրամայէ երիտասարդին մարդկայնով ձայնիւ եւ լեզուով եւ յարոյց զմեռուցեալն։ Տիմոթ. էջ 222։

Նայինի հրաշքին պատմութիւնը կը պատմէ Ղուկ. Է 11 – 17. մեր հատուածը կ'ակնարկէ յատկապէս հմ. 14, ուր մեր թարգմանութեան մէջ կ'ըսուի. Եւ մատուցեալ մերձեցաւ ի դագաղն. եւ որ բարձեալն տանէին՝ զտեղի առին. եւ ասէ. Պատանի դու, քեզ ասեմ, արի։

Ըստ այսմ շեղջ կը նշանակէ "դագաղ"։

## 58. Շնչոցան։

Այս բառին վրայ տես վերը Ճոճոճոցան (թիւ 38)։

## 59. Ողանցական։

Քանզի ի ձեռն կնոջ ողանցական հանդերձեալ, զմտածութիւն ծնելութեանն երեւեցուցանել։ Տիմոթ. էջ 192։

Իմաստը մութ է հատուածիս մէջ, որ առնուած է Բարսղի Ս. Հոգւոյ ճառէն։ Պր. Ա. Ջամինեան կը մեկնէ "ճամբորդ" (ողջ եւ անցանել բառերէն), իբր է յեան կնոջ՝ ողանցական հանդերձեալ (էր լինել) "աշխարհ գալ, մարդանալ"։

## 60. Ողջունել։

Եւ զի յաղագս նորա ոչ ողջունեցին, կաղան իսկ շաւղօք։ Տիմոթ. էջ 135։

Ողջունել "կաղին ոտքը բժշկուիլ, ուղղուիլ"։

## 61. Ունկնդրել:

Ի նմանութիւն մարդկան եղեալ եւ ձեւով գտեալ իբր մարդ, նուաստացոյց զինքն՝ եղեալ ունկնդիր մինչ մահու, եւ մահու խաչի: Տիմոթ. էջ 272:

Հատուածս առնուած է Փիլիպ. բ 7—8 համարներէն. "ի նմանութիւն մարդկան եղեալ եւ կերպարանօք գտեալ իբրեւ զմարդ. խոնարհեցոյց զանձն, լինեալ հնազանդ մահու չափ եւ մահու խաչի" (յն. ὑπήκοος լսող):

Նոյնին տարբեր բառերով կրկնութիւնն է "աղքատացաւ վասն մեր, եւ եղեւ լսող Հօր մինչ մահու եւ մահու խաչին". Տիմոթ. էջ 161. Հոս համապատասխան բառն է լսող, ինչպէս տեսանք վերը, թիւ 24:

Ունկնդիր "լսող, հնազանդ, հլու" ձեւը կ'ենթադրէ եւ ունկնդրել "լսել, հնազանդիլ" բայը, որուն հականիշն է ապստամբել:

## 62. Պատուղջել:

Եւ մի՛ ծախեսցի դարձեալ ձուկն ի բեւրուց մարմնոց, այլ պատուղջեալ ի գզրոցի դիցի այրն եւ մի՛ ոսկերք եւ մի՛ այլ ինչ վաճառեսցեն: Տիմոթ. էջ 323: Առնուած է Ոսկեբերանէն. ոսկեդարեան թարգմանութիւնն ունի նոյն տեղը. "այլ պատեալ ի տապանի այրն լինիցի" (Ոսկ. էջ 446):

Պատուղջել "փաթթել, պատատել, ծրարել"

## 63. Պատճառելի:

Կամ եթէ՝ ո՞չ (տպուած է ոչ) վերծանեցէք յօրէնս, եթէ ի շաբաթս քահանայքն ի քահանայարանին զշաբաթն պղծեն եւ անպատճառելիք են: Տիմոթ. էջ 287:

Հատուածս առնուած է Մատթ. ժբ 5 համարէն. "Կամ թէ չիցէ՞ ընթերցեալ յօրէնս՝ զի ի

շաբաթս քահանայքն ի տաճարին պղծեն զշաբաթն եւ անմեղք են»․ (յն․ ἢ οὐχ ἀνέγνωτε ἐν τῷ νόμῳ, ὅτι τοῖς σάββασιν οἱ ἱερεῖς ἐν τῷ ἱερῷ τὸ σάββατον βεβηλοῦσι, καὶ ἀναίτιοί εἰσι;)

Ըստ այսմ անդատապարտելի կը նշանակէ «անմեղ» եւ է տարկական թարգմանութիւն յն․ αν-αίτιος հոմանիշին։

Լուսանցքին վրայ բառս մեկնուած է «մեղադրելիք», որ յայտնապէս սխալ է։

## 64․ Պարապել։

Իբր զՔրիստոսի աշակերտ մաքրեցիր, պարապեցեր, ի բաց զերծո զ'ի ծննդենէն ծածկոյթ։ Տիմոթ․ էջ 25։

Պարապել «մաքրուիլ, սրբուիլ»։

## 65․ Ջնել։

Այս բառը յայտնի է արդէն «ծեծել» նշանակութեամբ, ինչպէս ունին Պիտ․ Ոսկիփ․ Նար․ այսպէս նաեւ Տիմոթ․ «Ջնեցաւ գիտակն բերել զմեղկութիւն (էջ 79)․ գարածոցն որ ի ջնմանցն զգացեալ (էջ 275)»։

Սակայն Տիմոթէոսի մէջ ջնել ուրիշ նշանակութիւն մ'ալ ունի, որ մենք հիմայ «ականջը ծակել, գէշ թուիլ, ականջին խորթ գալ» ձեւերով կը բացատրենք․ «յորժամ . . . լուիցես մահ, մի զարմասցիս․ զի զխաչեցեալն եւ զթաղեալն մի ջնեսցէ զլսարանդ, իբր աստուածութեանն զայս կրեցելոյ (էջ 116)»․ միեւնոյնը երկրորդ անգամ «զի յորժամ . . . լուիցես մահ, մի զարմանայցես, զի զխաչեցեալն եւ թաղեալն մի ջնիցէ զլսարանն, իբր աստուածութեանն զայս ախտակրեցելոյ» (էջ 102)։ Երկու տեղն ալ խօսքը Քրիստոսի Աստուծոյ մահուան եւ թաղման վրայ է, որ ոչ-քրիստոնէին համար խորթ գաղափար մ'է։

## 66. Սաքքար։

Տիմոթ. էջ 318—322 բազմաթիւ անգամներ կը գործածէ սաքքար, միասաքար եւն ձեւերը՝ փոխանակ սովորական շաբաթ, միաշաբաթ եւն բառերուն. այսպէս էջ 318 ի սաքքարորդում, շաքքարն, ի միասաքարորդում, էջ 319 սաքարոկան, յաւուր սաքարացն, միասաքքարորդն, էջ 320 սաքքարորդն, սաքքարորդաց, էջ 321 սաքքար, սաքքարի, մի սաքքարաց, էջ 322 շաքարն։ Ասոնք յունականին սորկական տառադարձութիւնն են։

## 67. Սայն։

(Քրիստոս) ընդ ամեն սայնս աղքատութեանս մերոյ անցանելով՝ մինչ ի մահու ժամանեաց փորձութիւն։ Տիմոթ. էջ 26։

Սայն կը նշանակէ "կարգ, վիճակ, աստիճան"։

## 68. Սարաւել։

Զայս յայամ տեղւոջ սարաւեաց ասելով՝ ի մէջ երեկորնայ։ Տիմոթ. էջ 320։

Սարաւել թուի "յարմարել, կարգել". Հմմտ. սարաս "կերպ, եղանակ", սարաւել "կերպ մը ըլլալ"։

## 69. Սէրկս։

Արդ, վասն զի բազումս եւ օգտակարս պիտառութիւնս երանելեացն մերոց հարանց ընտրեցաք, հարկաւոր համարեցայ սէրկս նախադրել զ'ի տոմարէն Ղեւոնի հայհոյութիւնս։ Տիմոթ. էջ 52։

Սէրկս կը նշանակէ "այժմ, հիմայ". տարբեր է սէրկ "այսօր", զոր Տիմոթ էոս եւս ունի էջ 77=194. "սերկ էակն ծնանի եւ էակն եղանի"։

## 70. Սնարնոց։

Որ կերակրեաց ի հինգ հացիցն հինգ հազարս, սա ննջէր ի վերայ սնարնոցի. եւ ի վերայ սնարնոցի

ննջեցեալն, ինքն վերաստատեաց հողմոցն իբր Աստուած։ Տիմոթ. էջ 95։

Հատուածս կ'ակնարկէ Մարկ. Դ 35-40, ուր համապատասխան կտորը այսպէս է. «Եւ ինքն ննջէր ի խելս նաւին ի վերայ բարձի»։ Յն. καὶ ἦν αὐτὸς ἐπὶ τῇ πρύμνῃ ἐπὶ τὸ προσκεφάλαιον καθεύδων:

Անարնոց կը նշանակէ ուրեմն «բարձ, որուն վրայ մարդը կը հանգչի»։

## 71. Սուր։

Աստանօր քաղցր, անդ սուր(?), այլուր թթու, ի միւսում դառն։ Տիմոթ. էջ 324։

Նշանակուած համբուն մէջ «կծու» միայն կը պակսի. եւ ճիշդ այս նշանակութիւնն ունի սուր, իբր փոխաբերաբար. Հմմտ. Թրք. +էօկին, գերմ. scharf, ռուս. острый եւն, որոնք կը նշանակեն թէ «սուր, համու» եւ թէ «կծու»։ Տիմոթէոս կը հետեւի Յն. ὀξύς բառին։ Հատուածս Ոսկեբերանէն առնուած ըլլալով՝ ոսկեդարեան թարգմանչին քով կը գտնենք հետս. «աստ քաղցր եւ անդ թթու, այլուր կծու եւ այլուր դառն»։

## 72. Սփափող։

Իսկ եթէ այս է ըստ նոցայն ամպարշտութեանն, աստանօր եւ ամենայն իրօք, ով Պօղոս, գրել. «Ո՞վ մեզ այսպէս. քանզի ոչ զհրեշտակաց բռնահարեաց, այլ զսերմանէ Աբրահամու բռնահարեաց»։ Տիմոթ. էջ 278։

Սփափող կը նշանակէ «ստախօս»։

Տպագրեալին մէջ առաջին ստորակէտը դրուած չէ եւ սփափող էօ ձեւին քով աւելցուած է կասկածական նշան։ Այս կէտադրութեամբ խօսքը անհասկնալի է. բայց ստորակէտն աւելցնելով՝ իմաստը բոլորովին կը պարզուի։ Տիմոթէոս կ'ըսէ.

«Թող մէկը չըսէ թէ այն մարմինը՝ զոր Քրիստոս Մարիամէն առաւ, մերինէն տարբեր էր: Եթէ այդպէս ըլլար, ուրեմն դու կատարեալ ստախօս մ'ես, ով Պօղոս, որ կը գրես թէ» եւն:

## 73. Ստորախշտեցուցանել:

Իսկ զծովն վայրենեօք ի բարձունս ամբարձեալ կոխակօք առ բաղձանկան նաւելոցն ստորախշտեցոյց խաղաղութիւն: Տիմոթ. էջ 31:

Կազմուած է «ստոր» «վար» եւ խշտի «անկողին» բառերէն. կը նշանակէ «վար պառկեցնել, իջեցնել, հանդարտեցնել», իբր տառական թարգմանութիւն յն. χατα-χοιμάω բառին:

## 74. Վաղորդայնազգեցիկ:

Սորա անուանս նախ արեգական գայր եւ նախ լուսնի, յաւէտախաղացաբար ի Հօրէ նախ վաղորդայնազգեցիկն ծնիցեալ: Տիմոթ. էջ 239:

Եւ զի սա է կատարեալ միտք Աստուծոյն Բան, որ նախ վաղորդայնազգեցիկն ծնիցեալ: Տիմոթ. էջ 256:

Երկուքն ալ կ'ակնարկեն Սաղմ. ճԹ 3. «յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ»:

Վաղորդայնազգեցիկ կը նշանակէ «Արուսեակ», (ինչպէս մեկնուած է նաեւ ձեռագրին լուսանցքին վրայ) իբր տառական թարգմ. յն. ἑωσφόρος հոմանիշին, որ նոյնպէս կազմուած է ἕως «այգ» եւ φορέω «զգենուլ» բառերէն:

## 75. Վանք:

Գործածուած է Եսայի կզ 24 համարէն առնուած հատուածի մը մէջ, զոր Տիմոթէոս մէջ կը բերէ երկու անգամ:

*Էջ 37:*

*Եւ տեսցեն, աւէ, զմանգս մարդկան զյանցաւորացն առ իս. քանզի որդն նոցա 'չ վախճանեսցի եւ հուրն նոցա ոչ շիջցի, եւ եղիցի ի տեսիլ ամենայն մարմնոյ:*

*Էջ 282:*

*Որպէս ամենեքեան տեսցեն զմանգս մարդկան՝ յանցաւորացն ի նմա. քանզի որդն նոցա ոչ վախճանեսցի եւ հուր նոցա ոչ շիջցի, եւ եղիցին ի տեսիլ ամենայն մարմնոյ:*

Բնագիրն ունի. «Եւ ելցեն եւ տեսցեն զոսկերս (երրայեցին ունի դիակ) մարդկան առ իս յանցուցելոց, զի որդն նոցա ոչ վախճանեսցի, եւ հուր նոցա ոչ շիջցի, եւ եղիցին ի տեսիլ ամենայն մսեղեաց»:

Վանք կը նշանակէ ուրեմն «ոսկոր», ինչպէս կը մեկնուի նաեւ ձեռագրին լուսանցքին վրայ:

## 76. Վէտ ոսկրացս:

Եւ այսոցիկ ի վերայ բերէ վէտ ոսկրացս. մի՛ այսուհետեւ ուրացցի զնա մարդ ....: Տիմոթ. էջ 129:

Հրատարակիչները Վ գրին քով կասկածական նշան են դրած. ըստ իս այս նշանը վերցնելու է եւ բառն ալ ուղղելու է ցէտ ոսկրացս, ինչպէս որ նոյն էջ, հինգ տող վերը կ'ըսուի. «Ի վերայ բերէ դարձեալ ցէտ ոսկրացս, ասելով. զի զորս գիտէ զմահ» եւն:

## 77. Վէրոփխել:

Եւ յորժամ մինչ դարձեալ մտածութեամբ կամեցեալ հասանել՝ ոչ գտցուք, մի՛ դժարեսցուք եւ հեռասցուք (հեռալ բայէն, «զայրանալ, սրդողիլ, նեղանալ» մտքով), այլ բարեմտութեամբ ենթադարձեալք եւ վէրոփխելով զմտածութիւն, ապաստանելով ի կարութիւն Աստուծոյ եւ քաջահնարութիւն: Տիմոթ. էջ 325:

Հաստուածս առնուած է Ոսկեբերանէն, որուն ոսկեդարեան թարգմանութիւնը յիշեալ տեղն այսպէս ունի. «Եւ յորժամ դարձեալ խորհրդով կամիցիմք հասանել եւ չդատանիցեմք, մի՛ դժուարեսցուք եւ մի՛ զայրասցուք, այլ մտավարժ բարուք դարձցուք եւ նահանջեսցուք զխորհուրդս» (Մնացեալը պակաս է) (էջ 448)։

Վէրագէսէլ բառին նշանակութիւնն է ուրեմն «նահանջել»։ Ի՞նչ բառ է այս։ Յունաբան դպրոցի այլակերպ վիժմունք մը. բառակերտութեան ամենէն այլանդակ օրինակը։ Յունարէն կ՚ըսուի ἀναστρωφάω, ἀναχομίζω «նահանջել», ἀναστροφὴ, ἀναχομιδὴ «նահանջ, ետ դառնալը». առանք կուգան στρωφάω, χομίζω «դառնալ եւն» ձեւերէն. առնցմէ ստուգաբանօրէն անբաժան են στρεπτὸς, χόμη «մազ, գէս» բառերը։ Եւ ահա յունաբան թարգմանիչը չհաւանելով մեր նահանջել, յետս դառնալ եւն ձեւերուն եւ կապկօրէն կեղծելով յունարէն բառերը՝ թարգմաներ է ἀνα- = վէր-, χομί-ζω = գէս-էլ (գէս բառէն)։

## 78. Վիժաչանալ։

Յիսուս տայ հոգեկան ըմպել ջուր, վիժաչացեալ ի կենդանութիւն յաւիտենական։ Տիմոթ. էջ 258։

Վիժաչանալ «բխել ցայտել ջուրցն». Հմմտ. վիժակ «ջրին բխումը, վազելը». արմատը վէժ։

## 79. Տոփել։

Քանզի արտաքս հայցեաց, որպէս զսուրբ առաքելոյն սատանայ, այսպէս եւ զսուրբ հայրն մեր եւ զվարդապետս սորոյ եկեղեցւոյ բազում անգամ՝ առ ի տոփել զնոսա իբր ցորեան, այլ ոչ պակասեաց նոցա հաւատն ի նախարկութեան փորձութեանցն։ Տիմոթ. էջ 248։

Հաստուածս կ՚ակնարկէ Ղուկ. ԻԲ 31—32. «Ահա սատանայ խնդրեաց զձեզ խարբալել իբրեւ զցորեան, այլ ես աղաչեցի վասն քո՝ զի մի՛ պակասեսցեն հաւատք քո»:

Ըստ այսմ տառատել կը նշանակէ «խարբալել, մաղել»:

## 80. Տարատել:

Ո՛չ գիտելով բաժանումն միայն գիմի եւ ոչ ի բաց հատանելով յերկնայնուոյն զերկրայինն, եւ ոչ յերկրայնուոյն զերկնայինն. քանզի ամպարշտէ տարատումնն: Մի՛ այսուհետեւ տարատողացն պատճառս տացեն ասօղքն երկուս բնութիւնս: Տիմոթ. էջ 261:

Տարատել «բաժանել», տարատող «բաժանող», տարատումն «բաժանումն». կազմուած են տար եւ հատ-անել բառերէն, թարգմանաբար յն. διατέμνω հոմանիշէն:

## 81. Տետրադ:

Այս ձեւը գործածուած է Տիմոթէոսի մէջ չորս անգամ՝ փոխանակ աւելի սովորական տետրակ ձեւին, ինչ. էջ 54, 74, 100. նորին տետրադէ իբ. նորին տետրադէ իդ. Նեստորի հերձուածողի ժե տետրադէն հայհոյութիւնք. ի վեցերորդ տետրադէն:

Փոխառեալ է յն. աշխ. τετράδι, τετράδων ձեւէն:

## 82. Տղել:

Այս բառը եւ իր ածանցները մեր հին մատենագրութեան մէջ գործածուած են միայն հետեւեալ տեղերը. Իսկ թագաւորն սպառնացեալ՝ ողջինչ լսէր. ծածկեալ կայր ի գահոյան, զի եւ շարժել անգամ ոչ տղէր. Բուզ. Դ 15. Անտղելի ինքնակացութիւն . . . շարացեալ անտղելի եւ անճառելի միա-

ւորութեամբն։ Թէոդոր. խչ.։ Ցարահիւսեալ մեռանի ի վերայ քո անտդղաբար արտաշնչութեամբն կենդանին. Թէոդոր. խչ.։ Ասոնց իմաստը մութ է. ՀՀԲ (Մխիթար Աբբայի բառարանը) կը մեկնէ՝ տդէլ "բաժնել", իրմէ կազմած է նաեւ ենթադրաբար անտդէղ "անորոշ, անբաժան, անանջատ, անանջրպետ". ՆՀԲ կը մեկնէ տդէլ "կամիլ, յօժարիլ, խնդրել", անտդէլի "անբաժանելի կամ թերեւս անքննելի կամ անփոփոխ, անշարժ", անտդղաբար "անբաժանաբար կամ գուցէ անքննաբար". Հին բռ. եւս ունի անտդելի "անշարժ կամ անբաժին"։

Բառին իմաստին վրայ նոր լոյս կը սփռէ Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը, որ հետեւեալ ձեւերով կը գործածէ զայն. Զանպայթելի եւ անտդելի հաւատն. էջ 153. Զի եւ օրինացն անտդէլի մնայցէ. էջ 283. Տիրելով հարստութեան ծովու եւ շտդղո-ելի-ն կոհակաց նորա հանդարտեցուցանելով. էջ 219։ Դու տիրես հա;ստութեան ծովու, շտդէլո-ելի-ն կոհակացն նորա դու հեզացուցանես. էջ 294։ Վերջին երկու օրինակները առնուած են Սաղմ. ՁԸ 10 համարէն, որ մեր թարգմանութեան մէջ հետեւեալ ձեւով է. Դու տիրես զօրութեանց ծովու, եւ զխռովո-ելի-ն ալեաց նորա դու ցածուցանես։ Հաստուածիս մէջ տղո-ելի-ն, տդէլո-ելի-ն բառերուն համապատասխանն է "խռովութիւն", որով տդէլ կը նշանակէ "յուզուիլ, խռովիլ, շարժուիլ", անտդլէլ "անշարժ, անխռով", անտդղաբար "անշարժաբար, առանց շարժուելու"։ Պարզական արմատն է տէղ, զոր կասկածով կը յիշէ միայն Առձ. Բառ. ասոր կը կցեմ նաեւ տղէղ (ըստ ԱԲ), տղղ կամ տըղղ (ըստ ՆՀԲ) "յաւելուած իրաց քամելոց, մրուր". (Հիւանդն) խնդրէ զանախորժս ախորժակս, մթերեալ յինքեան զհամաքամուածս եւ զտղղս. Մագ. ԻԲ. Թերեւս նաեւ տղընդէր կամ տղընտէր "փոր ուռած, հաստափոր" Փիլ. Մխ.

ռաւակ.։ Տէղ արմատին կրկնականն է տնտղէլ (Հմմտ. տան-տաղէլ, տոն-տող եւն), որ գաւառականներուն մէջ կը նշանակէ "պրպտել, փնտռել", իսկ ԱԲ կը դնէ "ուռիլ"։

Ըստ այսմ տղէլ ճշտիւ կը համեմատուի յ յղ բառին՝ նշանակութեանց երանգաւորութեան կողմէ. յ--ղէլ կը նշանակէ "շարժիլ, խռովիլ. 2. փրնտռել, պրպտել. 3. կամիլ, ուզել". վերջին իմաստը կը գտնենք Բուզանդի ու տղէր ձեւին մէջ։

## 83. Տոմփ։

Եկն առ Կոյսն խօսեցեալ առն, որում անուն Յովսէփ, ի տանէ եւ է տոմփէ Գաւթայ. Տիմոթ. էջ 283։

Գործածութեան ձեւէն կ՚երեւայ որ տոմփ կը նշանակէ "ազգ, ցեղ, տոհմ"։ Կրնար կասկածուիլ որ բառս սխալ գրչութիւն մը ըլլայ՝ փոխանակ ըսելու տոհմ։ Սակայն այս կասկածը կը փարատուի բառիս տոմփակալ "ցեղակից, նմաններ" ածանցով, որ կը գործածէ Տիմոթ. էջ 94. "Իւ զի զայս հաւատագոյնս եւ ամենեցուն դիւրընկալս ասացից՝ զԱրիոսի Եւնոմեայ եւ զամենեցուն պարուցն այսպիսեացս տոմփակալաց փոյթ Աստուածածին ներածել, իբր խառնութեան եղելոյ եւ երկուց բնութեանց ոչ բաժանելոց...."։

Հրատարակիչները խօսքին իմաստը հասկցած չեն եւ առանց անդրադառնալու տոմփ բառին վրայ, կարծած են թէ փականքներու հետ գործ ունին եւ բառը երկուքի բաժնելով՝ կարդացած են տոմ (?) փակալաց (կասկածական նշանով)։ Այսպէս է եւ Գ. Տէր Մկրտչեան՝ որ քննելով յիշեալ բառը (Արարատ 1908, էջ 580)՝ տոմ կը կարդայ մոմ, որով տոմփակալաց կ՚ըլլայ մոմ փակալաց։ Ըստ իս խօսքը հետեւեալ ձեւով կը հասկցուի. "Ճիշտ ու պարզ խօսելով՝ Արիոս. Եւնոմիոս եւ սոցին նման-

Նէր֊֊ն բովանդակ խումբը կը փութար Աստուածա-ծինը մէջ բերել, որպէս զի . . . „:

### 84. Փրկ֊նիչ:

Նազարացի էր եղեալ եւ այր ըստ ճշմարտու-թեան կարաւոր եւ փրկ֊նիչ գոյր Իսրայելի. Տիմոթ. էջ 234: Համմտ. Ղուկ. ԻԴ 19—21. զՅիսուսէ Նա-զովրեցւոյ, որ եղեւ այր մարգարէ, հզօր արդեամբք եւ բանիւք . . . Մեք ակն ունէաք թէ նա է որ փրր-կելոցն է զԻսրայէլ:

Փրկ֊նիչ նոյն է ընդ "փրկիչ„, Համմտ. փրկա-նաւորել:

### 85. Քաղ֊֊֊ոյց:

Եւ երեւեալ մարդ, մարդ մերով նմանու-թեամբս տայր քաղ֊֊֊ոյց պարմանալեաց գործոյն իմանալ. Տիմոթ. էջ 31: Թուի "լաւ ի միտ առ-նելու, հասկանալի„. ցի մասնիկ է, ինչպէս ոփ֊ոյց, բ֊նոյց եւն:

### 86. Քառ֊֊կ:

Տիմոթէոս չորս տեղ այս ձեւը գործածած է "տետրակ„ բառին տեղ. ինչպէս՝ էջ 122, 127, 151, 170, բոլորն ալ ի քառ֊֊կէ բացառական ձեւով: Լուսանցքին վրայ (էջ 122) բացատրուած է արդէն "տետրատ„: Թարգմանուած է յն. τετράς հոմա-նիշէն, իբր "չորս ծալուած, կամ չորեքթերթեան„:

### 87. Քար֊֊պէլ:

Կերպ ծառայի առեալ եւ կրեալ վասն մեր մարմնով եւ ի չիրմի սերտ վիմի քար֊֊պ֊֊ցելոյ թա-ղեցեալ. Տիմոթ. էջ 44—45:

Եւ թաղեաց զնա հանդերձ Նիկոդեմաւ, ի նորում իւրում չիրմի, զոր էր քար֊֊պէ֊լեալ ի վիմէ. Տիմոթ. էջ 46:

Հայեցարուք ի սիրտն վէմ, զոր քարատեցէք. Տիմոթ. էջ 47։ = Եսայի ԾԱ 1. «Նայեցարուք ի վէմն հաստատուն յորմէ կոփեցարուք». (Բառ այսմ է սիրտն վէմ ուղղելի է ի սերտն վէմ «հաստատուն, սերտ, ամուր քար»)։

Քարատել «տաշել, կոփել», կազմուած քար եւ հատանել ձեւերէն, թարգմանաբար յն. λιθοτέμνω համանիշէն։

88. Քարարկել։

Քարարկեցէք, եթէ զայս պիտայցէ կրել. Տիմոթ. էջ 25։

Յաղագս այնիւ գործոց ոչ քարարկեմք զքեզ, այլ յաղագս հայհոյութեան. Տիմոթ. էջ 119. (= Յովհ. Ժ. 33. Վասն բարւոյ գործոյ ոչ առնեմք զքեզ քարկոծ, այլ վասն հայհոյութեան)։

Քարարկել «քարկոծել», քարարկիլ «քարկոծուիլ»։

(Վերջ։)



# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

Ա. Գալէմքեարեան Հ. Գր. Վ., *Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոլէր, Իրաւունք Հայոց: 1890: Էջ 85+59:* Ֆր. 1.25

Բ. Մենեվիշեան Հ. Գ., *Ազգաբանութիւն ազն. զարմին Տիւզեանց: 1890: Էջ 50:* Ֆր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յ., *Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: Էջ ԺԱ+159:* Ֆր. 1.25

Դ. Տան Դ., *Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: Էջ 79:* Ֆր. —.85

Ե. Տաշեան Հ. Յ. Վ., *Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ վարուց Աղեքսանդրի: 1892: Էջ Դ+272:* Ֆր. 3.—

Զ. Տըվշէ Ա. եւ Գ. Փիսոն, *Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: Էջ 82:* Ֆր. 1.—

Է. Մառ Ն., *Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ռ. Անոփեան: 1892: 89:* Ֆր. 1.25

Ը. Գարիէր Ա., *Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Ժ+51:* Ֆր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., *Պատմութիւն հայ լրագրութեան: Հտր. Ա. 1794—1860: (1 լուսանկարով:) 1893: Էջ 232:* Ֆր. 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., *Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: Էջ Է+92:* Ֆր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթու-պոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 զըն-կատիպ.) 1893: Էջ Ժ + 533: Ֆր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Զենոբ Գլակ, համեմատական ուսումնասիրութիւն: 1893: Էջ Զ+78: Ֆր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փ., Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տխտկ՝. 55 պտկ.:) 1894: Էջ Ը+103: Ֆր. 2.—

ԺԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ՝ Յաւելուած: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1894: 8° Էջ ԺԱ+43: Ֆր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Փրոքէլ-ման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: Էջ Թ+145: Ֆր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. Մասն Ա: Ա–Զ. Նեմեսիոս, Պրոկղ Դիադոխոս, Խոսրովիկ, Գիրք Հերձուածոց, Պրոկղ եւ Սեկունդոս: 1895: Էջ ԺԲ+296·
Ֆր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ամփոփուած եւ թարգմ. ծանօթութեամբք: 1895: Էջ Թ+202: Ֆր. 2.5

ԺԸ. Տիգրանեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: Էջ 92: Ֆր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Գերլա Հայաքաղաքի ի՛ գիր եւ ի պատկերս: 1896: Էջ Թ+352:
Ֆր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յ. Վ., “Վարդապետութիւն առաքելոց„ անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադդէի: 1896: Էջ Թ+442: Ֆր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հե-

տագօտութիւն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: Էջ Է+62: Փր. 1.—

ԻԲ. Կարրիէր Ա., Աբգարու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1897: Էջ ԺԵ+107: Փր. 1.50

ԻԳ. Յովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ: Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897: Էջ Ը+272: Փր. 4.—

ԻԴ. Յովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ: 1897: Էջ Ա—Ը: 273—522: Փր. 3.—

ԻԵ. Գէլցէր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք 1. Ցանկ Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897: Էջ Ը+130: Փր. 1.50

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Գիրք (կամ՝ յօդուած) գրելու արուեստը: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: Էջ Է+118: Փր. 1.25

ԻԷ. Խաչատեան Գր., Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք· 1898: Էջ Է+53: Փր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ. Վ., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչութեան արուեստին: (10 զնկատիպ պատկերով:) 1898: Էջ ԺԱ+202: Փր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փ. Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Քննութիւնն Մ. Խորենացու աղբիւրների մասին: 1898: Էջ Թ+175: Փր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899: Էջ Է+26: Փր. —.50

ԼԱ. Քոսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ ԺԲ+369: Փր. 5.—

ԼԲ. Քօսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ վիճակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Էջ Ժ+161: Փր. 2.50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հտր. 1780—1825: 1899: Էջ Է+554: Փր. 5.—

ԼԴ. Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: Էջ Է+120: Փր. 1.—

ԼԵ. Կարրիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեաններն Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան (1 քարտէզով): 1899: Էջ 43: Փր. —.70

ԼԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: Էջ ԺԱ+193: Փր. 2.50

ԼԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. (տես ԺԶ:) Մասն Բ: Է—Ժ. Խիկար եւ իւր իմաստութիւնն, Ագապետոս եւ իւր Յորդորականք առ Յուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: Էջ ԺԲ+384: Փր. 4.50

ԼԸ. Տէր-Պօղոսեան Գր., Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: Էջ Ը+110: Փր. 1.50

ԼԹ. Վէքէր Ս., Արարատը Ս. Գրոց մէջ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1901: Էջ Ծ+77: Փր. 1.—

Խ. Սանտալճեան Յովսէփ Վ., Ասորեստանեայ եւ Պարսիկ սեպագիր արձանագրութիւնք կամ որոնք Նաիրի-Ուրարտու աշխարհին պատմութեան կը վերաբերին: 1901: Էջ 262: Փր. 4.50

ԽԱ. Խաչաթեանց Բագրատ, Հայ ժողովրդական դիւցազնական վէպը: 1903: Էջ Ը+72 Փր. 1.—

ԽԲ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Արդի լեզուագիտութիւնը: Հտր Ա.: 1903: Էջ Ը+204: Փր. 3.—

ԽԴ. Մարկարտ Յ., Հայ Բդեաշխք: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1903: Էջ 39: Փր. - .75

ԽԴ. Գէլցէր Հ., Սկզբնաւորութիւնք Բիւզանդեան բանակաթեմերու դրութեան (1 քարտէզով): Թրգմ. Հ Գ. Գարանֆիլեան: 1903: Էջ Է+83: Ֆր. 2.—

ԽԵ. Կիւլէսէրեան Բ. Վ., Ծոփք, Ծոփք-Տլուք եւ Հռոմ-Կլայ, պատմական եւ տեղագրական ուսումնասիրութիւն: (1 քարտէզով): 1904: Էջ Ը+117: Ֆր. 1.50

ԽԶ. Կիւլէսէրեան Բ. Վ., Կոլոտ Յովհաննէս Պատրիարք. պատմագրական եւ քննասիրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ ԺԴ+227: Ֆր. 3.50

ԽԷ. Պեդերսըն Հ., Նպաստ մը հայ. լեզուի պատմութեան: Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան : 1904: Էջ Ը+87: Ֆր. 1.25

ԽԸ. Տէր-Մկրտչեան Գ. եւ Աճառեան Հ. Յ., Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ նորագիւտ ձեռագրին: 1904: Էջ Է+105: Ֆր. 1.50

ԽԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս: Գ. Հտր. 1825-1904: Էջ Ժ+658: Ֆր. 7.—

Ծ. Շտրէք Մ., Հայաստան, Քրդաստան եւ արեւմտեան Պարսկաստան բաբելական-ասորեստանեայ սեպագրերու համաձայն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1904: Էջ Է+222: Ֆր. 3.—

ԾԱ. Խալաթեանց Գր., Հայ Արշակունիք ըստ Մովս. Խորենացւոյ, կամ Նոր ուսումնասիրութիւններ Մովս. Խորենացւոյ մասին: Թրգմ. Արսէն Ս. Սիմոնեանց: 1906: Էջ Ը+124: Ֆր. 1.50

ԾԲ. Պեդերսըն Հ., Հայերէն եւ դրացի լեզուները: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1907: Էջ ԺԱ+257: Ֆր. 5.—

ԾԳ. Հիւբշման Հ., Հին Հայոց տեղւոյ անունները: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1907: Էջ ԺԶ+443: Ֆր. 7.—

ԾԴ. Պեդերսըն Հ., Հին հայերէնի ցուցական դերանունները: Թրգմ. Հ. Յ. Տաշեան: 1907: Էջ Է+90: Ֆր. 2.—

ԾԵ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Կենսագրութիւն Սարգիս Արքեպիսկոպոսի Սարաֆեան եւ ժամանակին հայ կաթողիկեայք: 1908: Էջ ԺԳ+433: Ֆր. 5.—

ԾԶ. Աճառեան Հրաչեայ, Հայերէն նոր բառեր նորագիւտ Մնացորդաց գրոց մէջ: 1908: Էջ 38: Ֆր. —.60

ԾԷ. Կիւլէսէրեան Բաբգէն Ծ. Վ., Եղիշէ քննական ուսումնասիրութիւն: 1909: Էջ ԻԸ+458: Ֆր. 7.—

ԾԸ. Ակինեան Հ. Ներսէս, Ա. Տիմոթէոս Կուզ հայ մատենագրութեան մէջ: Էջ 60: Բ. Աճառեան Հրաչեայ, Հայերէն նոր բառեր Տիմոթէոս Կուզի հակաճառութեան մէջ: 1909: Էջ 61–106: Ֆր. 1.50